Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ

1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.
(գլխավոր խմբագիր)
ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե.
ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ.
(գլխավոր խմբագրի տեղակալ)
ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.
(պատասխանատու քարտուղար)
ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ.
ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.
ՄԱՆԴԱԼՅԱՆ Ք. Լ.
ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա.
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ.
ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ.
ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.
ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա.
ՖԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝
գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 58—86—11



# ՊՐԱԿՏԻԿ ԳՈՐԾԵՐՈՎ ԽՈՐԱՑՆԵԼ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում տեղի ունեցավ հանդիպում մասսայական ինֆորմացիայի միջոցների և ստեղծագործական միությունների ղեկավարների հետ, որի ընթացքում նրա մասնակիցները կարծիքներ փոխանակեցին վերակառուցման պրոցեսում, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի նախատեսած խնդիրների կատարման գործում մամուլի, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների դերի հետագա բարձրացման հարցերի շուրջը։**

*Հանդիպման ժամանակ ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար* Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԸ։

*— Մենք նորից ենք հանդիպում ձեզ հետ։ Ըստ իս, սա վատ ավանդույթ չէ։ Մենք բարձր ենք գնահատում այն ավանդը, որ վերակառուցման գործում ներդնում են մասսայական ինֆորմացիայի մեր միջոցները։ Ես այստեղ մտցնում եմ նաև մեր հանդեսները, այդ թվում՝ գրական. չէ որ դրանցում մեծ տեղ են գրավում հրապարակախոսական բաժինները։ Ես նույնիսկ կասեի, որ կուսակցությունը թերևս չհաջողվեր հասնել վերակառուցման ամբողջ պրոբլեմատիկայի (իսկ այն շատ ընդարձակ է, ոչ միանշանակ, հակասական) քննարկման այսօրվա մակարդակին, եթե ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից անմիջապես հետո մասսայական ինֆորմացիայի միջոցները ակտիվորեն, իսկապես չընդգրկվեին այդ պրոցեսում։*

*Սա առաջին։ Իսկ երկրորդն այն է, որ կյանքը սկսել է փոխվել։ Միգուցե ոչ այնպես արագ ու լիովին, ինչպես կցանկանայինք։ Այստեղ կան տարբեր տեսակետներ. ոմանք կարծում են, որ վերակառուցման պրոցեսները դանդաղ են ընթանում, մյուսները ասում են, թե մենք շտապում ենք։ Ես կարծում եմ, որ այն, ինչ մենք անում ենք, ծավալում մեր հասարակության մեջ, մեծ պատասխանատվություն ու կշռադատվածություն է պահանջում, և դրանով մենք պետք է որոշենք մեր տեմպերը։ Մեր թիկունքում հսկա երկիր է, հսկայական ժողովուրդ, որն այնքան բան է տվել, որպեսզի ամրապնդի ու բազմապատկի հոկտեմբերի նվաճումները, մեր երկիրը դարձնի սոցիալիստական հզոր տերություն։ Այդ պատճառով էլ մեր բոլոր քայլերը պահանջում են մեծ պատասխանատվություն թե՛ ժողովրդի առաջ, թե՛ ողջ մարդկության, հաշվի առնելով այն դերը, որ մեր երկիրը, մեր պետությունը կատարում են արդի աշխարհում։*

*Փոփոխություններ տեղի են ունենում, մենք դրանք տեսնում ենք։ Դրությունը այլ էր նախքան Կենտկոմի հունվարյան պլենումը, և միանգամայն այլ կերպ ընթացան դեպքերը նրանից հետո։ Պատրաստվելով անցկացնել Կենտկոմի հունիսյան պլենումը, մենք տեսանք, որ էկոնոմիկայի կառավարումն արմատապես վերակառուցելու հարցը դնելով օրակարգում, մենք չենք կարող չխոսել ամբողջությամբ վերցված վերակառուցման ընթացքի մասին։ Սա միանգամայն հասկանալի է։ Մեր էկոնոմիկայի բազմաթիվ երևույթների ողջ նշանակալիությամբ հանդերձ, նրանում վերակառուցման պրոցեսներ չեն ընթանա, եթե դրանք չիրականացվեն մեր հասարակության կյանքի մյուս բոլոր ոլորտների, նախ և առաջ այնպիսի ոլորտների հետ փոխկապակցված կերպով, ինչպիսիք են հոգևոր ու քաղաքական, դեմոկրատիայի և շատ այլ ոլորտներ։ Կենտկոմի հունվարյան պլենումից հետո այդ պրոցեսները փոխեցին իրենց բնույթը, փոխվեցին նաև դիսկուսիաների տեմպը, դրանց սրությունը, ըն-*

ենք, ըստ իս, մեր և ձեր ընդհանուր տեսակետն են։ Դա ամենաթողություն չէ։ Հրապարակայնությունը կոչված է ամրապնդելու սոցիալիզմը, մեր մարդու ոգին, ամրապնդելու բարոյագիտությունը, հասարակության բարոյական մթնոլորտը։ Հրապարակայնությունը նաև թերությունների քննադատությունն է։ Բայց դա սոցիալիզմի հիմքերի, մեր սոցիալիստական արժեքների խարխլում չէ։

Մենք գիտենք, թե ինչը հաստատենք ու պաշտպանենք։ Դրանք մեր, որպես սոցիալապես առավել պաշտպանված, հասարակության պատմական նվաճումներն են։ Դրան կարող են կասկածել միայն նրանք, ում մեր սոցիալիստական դեմոկրատիան և պատասխանատվության մեր պահանջները խանգարում են բավարարել իրենց այն անձնական պատվախնդրությունները, որոնք հեռու են ժողովրդի շահերից։ Եվ մենք դրա դեմ պայքարել ենք ու կպայքարենք։ Մենք ամենևին կարիք չունենք գունազարդելու մեր քաղաքականությունը, մեր արժեքները. մենք բաց ենք բոլորի համար։ Բայց դեմոկրատիան ենթադրում է նաև պայքար այդ արժեքների հաստատման համար։ Ես կամփոփեի այսպես. վերակառուցման պրոցեսները այժմ ծավալվում են թե լայնությամբ և թե խորությամբ։ Սկսվել է անցման դժվարին ժամանակաշրջանը, և այժմ առանձնապես հարկավոր են քաջատեղյակություն և պատասխանատվություն։

Հարկավոր է գործել այնպես, որ ամրապնդվի մարդկանց ոգին, հարկավոր է ամեն ինչ վերապրել, հաղթահարել, վերակառուցվել, և այն ժամանակ մենք կստանանք հասարակությանը հարկավոր արդյունքները։ Ուստի դուք պետք է ձեր աշխատանքում ավելի շատ ներգրավեք քաջատեղյակ մարդկանց։ Մասսայական ինֆորմացիայի միջոցները շատ են խոսում էկոնոմիկայի մասին, բայց ցավոք խոսում են թույլ, մակերեսորեն, երբեմն նույնիսկ գոռում-գոչյունով և բացարձակապես առանց գործի իմացության։ Վերակառուցման մեջ մեր խորանալու համեմատ կխստանան ձեզ ներկայացվող պահանջները։ Ուստի ձեռք բերեք հուսալի ակտիվ, լավ մասնագետներ՝ ձեռնարկությունների ղեկավարներ, ինժեներներ, տնտեսագետներ, գիտնականներ, օգտագործեք այն ամբողջ մտավոր պոտենցիալը, որ մենք ունենք։

Ձեր մեջ կա նաև այսպիսի հակում. ձեր հեղինակային ակտիվը սահմանափակել 3—5 հոդվածագիրներով։ Դրանից երբեմն խմբակայնության հոտ է գալիս։ Եկեք բազմազան դարձնենք մեր ելույթները, որպեսզի մասնակցի ամբողջ հասարակությունը, ամբողջ, այսպես ասած, սոցիալիստական պլյուրալիզմը ներկա լինի յուրաքանչյուր հրատարակության մեջ։ Ահա թե մեզ ինչ է հարկավոր։

Վերջում կասեմ. ՍՄԿԿ-ն բարձր է գնահատում մասսայական ինֆորմացիայի միջոցների ավանդը վերակառուցման մեջ։ Ինչու՞։ Որովհետև ամեն ինչ կատարվում է մարդու միջոցով։ Մարդն է դուրս գալիս պայքարի առաջավոր եզր։ Նրա միջով է անցնում ամբողջ վերակառուցումը։ Ուրեմն՝ նրա մտածողությունը, նրա դիրքորոշումը վճռական նշանակություն կունենան այն բանի համար, թե ինչպես կընթանա վերակառուցումը։ Մարդու հետ նման խոսակցություն մենք պետք է ունենանք ամեն օր՝ օգտագործելով մասսայական ինֆորմացիայի միջոցների հսկայական հնարավորությունները։ Չափանիշը, ընկերներ, մնում է մեկը՝ ավելի շատ սոցիալիզմ, ավելի շատ դեմոկրատիա։ Նոր հարցերի բոլոր պատասխանները պետք է փնտրել սոցիալիզմի շրջանակներում և ոչ թե նրանից դուրս։ Սոցիալիզմը մեր ժողովրդի կատարած ընտրությունն է։ Կուսակցությունը ծառայության մեջ է ժողովրդի մոտ։ Ժողովրդին ծառայելու մեջ է մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատողների բարձրագույն պարտքը։

Հուսով եմ, որ անկեղծության, կուսակցական ընկերականության ոգով ես ձեզ ասացի այն, ինչ ուզում էի ասել Կենտկոմի հունիսյան պլենումից հետո տեղի ունեցող այս հանդիպման ժամանակ։

Այնուհետև տեղի ունեցավ կարծիքների փոխանակություն։

«Դրուժբա նարոդով» ամսագրի գլխավոր խմբագիր Ս. Ա. Բարուզդինը կանգ առավ մեծ Հոկտեմբերի 70-րդ տարեդարձի նախօրեին գրական հանդեսների բովանդակության վրա։

— Շատ լավ է,— ասաց նա,— որ մենք հիմա մեր գրականություն ենք



վերադարձել հանիրավի մոռացված ստեղծագործություններ, այնպիսի ստեղծագործություններ, որոնք տարիներով ընկած էին և չէին հասնում ընթերցողին։ Բայց երբեմն իմ մեջ, որպես գլխավոր խմբագրի, այնպիսի զգացողություն է առաջանում, որ դիմելով անցյալին, մենք այնտեղ փնտրում ենք միայն բացասականը, կարծես թե սովետական պայմաններում մեր ապրած 70 տարում ոչ մի դրական բան չկա։ Ես կարծում եմ, որ սա նույնպես լուրջ մտորումների առիթ է։

Էլ չեմ ասում և այն, որ շատ դժվար է գտնել, հանդեսների իմ գործընկերները դա գիտեն, ժամանակակից վառ, տաղանդավոր ստեղծագործություն, որը պատմի այն կյանքի մասին, որ մենք հիմա ապրում ենք, վերակառուցման դժվարությունների մասին։ Բայց դա բոլոր դեպքերում կլինի հրատապ նյութ։ Մեզանում դա փայլուն կերպով են անում ակնարկագիրներն ու հրապարակախոսները, բայց, ցավոք, դա առայժմ վատ են անում թե՛ արձակագիրները, թե՛ բանաստեղծները և թե նույնիսկ թատերագիրները, որոնք վերակառուցման նախօրեին ասես առաջընթաց ցատկ կատարեցին, բայց այսօր ո՛չ «արծաթե հարսանիքով», ո՛չ «խոսիր»-ով, ո՛չ էլ այլ ներկայացումներով արդեն ոչ մեկին չես զարմացնի։ Որովհետև թերթերը հաղորդում են ավելի սուր բաների մասին, քան բեմադրված պիեսները։

Ս. Ա. Բարուզդինի ելույթում նաև շոշափվեցին գրական հանդեսների նյութատեխնիկական բազան ամրապնդելու, այդ հրատարակությունների աշխատողների նյութական խրախուսումը բարելավելու հարցերը։

«Իզվեստիա» թերթի գլխավոր խմբագիր Ի. Դ. Լապտևը իր մտքերը հաղորդեց մամուլի աշխատանքի որոշ ուղղությունների մասին, որոնք բխում են ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի որոշումներից։

— Մենք այստեղ լիակատար իրավունքով կարող ենք ասել, որ տեղի է ունեցել պատմական հունիսյան պլենումը, որը մեզ մոտեցրեց վերակառուցման ամենավճռական բնագծին, վերակառուցման պրակտիկ իրագործմանը։ Դրանից ելնելով եմ ես մտածում իմ խնդիրների մասին՝ որպես թերթի խմբագրի, ժուռնալիստիկայի խնդիրների մասին։ Կոնկրետ պլաններ մենք կազմել ենք։ Կոնկրետ աշխատանք մեզանում արդեն կատարվում է։

Այստեղ սկզբունքային կարգով ի՞նչն է գլխավորը։ Ինձ թվում է, որ այժմ առաջին պլան են մղվում պլենումի գաղափարների ու սկզբունքների պաշտպանությունը։ Պաշտպանությունը՝ ես սխալ չասացի։ Պաշտպանություն՝ չհասկանալուց, պաշտպանություն՝ կրճատումից, որովհետև կրճատում, հավանաբար, կլինի։ Պաշտպանություն աղավաղումից, որովհետև մինչև գաղափարները հասնեն անմիջական կատարողներին, անխուսափելիորեն տեղի կունենան դրանց որոշակի ձևախեղում և աղավաղում։ Պաշտպանություն խմբակային, գերատեսչական ու տեղայնական եսամոլությունից, որովհետև վերակառուցումը այդ առումով՝ տնտեսագիտական առումով, անխուսափելիորեն կծնի նման կարգի երևույթներ։ Դրան պետք է ըստ երևույթին պատրաստ լինել։ Պաշտպանություն, վերջապես, կրծող կասկածներից, թե արդյոք դրությունը չի՞ վատանա, այսպես ասած, սկզբունքայնորեն, որովհետև կատարվում է իրոք վիթխարի բեկում։

Ինչ վերաբերում է բուն պրոպագանդային, ապա մենք, ըստ իս, պետք է մեր առջև խնդիր դնենք ձևավորել յուրօրինակ ռեֆորմի գաղափարախոսություն։ Այս ասելով ես հասկանում եմ նախ և առաջ նոր տնտեսագիտական մտածողությունը։ Այն հարկավոր է մշակել ամենուրեք, հասնել այն բանին, որ բանվորը բրիգադի մակարդակում, ձեռնարկության մակարդակում, իր կոլեկտիվի մակարդակում պարզորոշ ըմբռնի ռեֆորմի գաղափարները, դրանք կապի իր բախտի հետ, իր բարօրության հետ։

Հրապարակայնությունը հասարակության մեջ հաստատվել է անդառնալիորեն։ Բայց հարկավոր է տեսնել, որ հրապարակայնությունը, այնուամենայնիվ, ենթարկվում է մշտական գրոհների ու ճնշումների։ Հրապարակայնության վրա գերատեսչական ճնշումը չի թուլանում։

Մ. Ս. Գորբաչով. Ճիշտ է։

Ի. Դ. Լապտև. Մենք սխալներ անում ենք։ Հարկավոր է մեզ դրանց համար քննադատել և լրջորեն։ Բայց մենք պետք է տեսնենք այն, որ ցանկա-

Մ. Ս. Գորբաչով. *Ես նույնպես համակարծիք եմ, որ Մոսկվայի ամբողջ կենտրոնը, ընդհուպ մինչև Սադովոյե կոլցո, իսկ Մալոյե կոլցոն առավել ևս, հարկավոր է առհասարակ ազատել գրասենյակներից և տրամադրել նրա համար, որ թե՛ նստել կարելի լինի, թե՛ հանդիպել, զրուցել: Հարկավոր է հոգու համար այս ամենը ստեղծել: Եվ, ի դեպ, Մոսկվան այժմ այդպիսի ծրագիր ունի:*

*Այնուհետև ընկ. Դեմենտեյը կանգ առավ բանվորական հերթափոխի հոգևոր դաստիարակության հարցի վրա: Հանդեսի խմբագրությունը պլանավորում է ստանձնել պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանների սովորողների հոգևոր շեֆությունը: Մենք, ասաց ելույթ ունեցողը, ուզում ենք բարձրացնել ամբողջ երկիրը, դիմել բոլոր հանրապետությունների բոլոր ստեղծագործական կազմակերպություններին, մշակույթի հիմնարկներին: Հարկավոր է ամեն ինչ անել, որպեսզի, երբ պրոֆտեխուսումնարանների ներկա սովորողները մտնեն արտադրություն, նրանք լինեն իրոք կրթված, բոլոր տեսակետներից գեղեցիկ մարդիկ:*

*Եվ վերջինը: Ինձ թվում է, որ, համենայն դեպս, անհրաժեշտ է ունենալ «Պատմություն» հանրամատչելի հանդես, որը ուղղված լիներ թե՛ դպրոցականներին, թե՛ պրոֆտեխուսումնարանների սովորողներին, թե՛ ուսանողներին, թե՛ բոլոր մարդկանց: «Հիշողություն» սրբազան խոսքը, սրբազան հասկացությունը ընկել է որոշ դավաճանների ու պրովոկատորների ձեռքը, իսկ մենք պետք է պահպանենք այն, մենք պետք է անաղարտ պահենք այն: Հենց այդ իմաստով է «Հիշողությունը» մեր ժողովրդի համար եղել սրբազան ու շատ թանկ բան:*

*«Տեատր» հանդեսի գլխավոր խմբագիր* Ա. Դ. Սալինսկին *իր ելույթը նվիրեց սովետական թատրոնի զարգացման հրատապ պրոբլեմներին: Նա ընդգծեց, որ քննադատությունը մեզ պետք է բարու ուժերը հաստատելու համար, որ հարկավոր է բացահայտորեն խոսել նաև այն մասին, թե անցյալում ինչն է վատ եղել, պատմականորեն սպառել իրեն:*

*Այնուհետև ելույթ ունեցողը ուշադրություն նվիրեց այն բանին, որ երկրում, անգամ խոշոր քաղաքներում, դանդաղորեն է զարգանում թատրոնների ցանցը: Դրա հետ մեկտեղ վատ են օգտագործվում մշակույթի պալատները՝ վարձույթի թանկության պատճառով: Նա խոսեց ստուդիական թատերական շարժման ավելի լայն զարգացման անհրաժեշտության մասին:*

*ՍՍՀՄ պետհեռուստառադիոյի նախագահ* Ա. Ն. Ակսյոնովը *պատմեց ստեղծագործական միությունների հետ հեռուստատեսության ու ռադիոյի համագործակցության մասին:*

*Հանդիպման վերջում* Մ. Ս. Գորբաչովն *ասաց. Այստեղ ասված ամեն ինչ ինձ շատ է ոգեշնչում: Այս հանդիպումը մենք բարձր ենք գնահատում: Մենք այսուհետ ևս այսպես կկառուցենք մեր հարաբերությունները: Կենտրոնական կոմիտեն, նրանք, ովքեր այսօր աշխատում են այնտեղ և պետության ղեկավարության մեջ, մեր հարաբերությունների մասին մտածում են հենց այդ հիման վրա՝ հանդիպումների, զրույցների, միասնական մոտեցման քննարկման ու մշակման հիման վրա: Հարգելով զրուցակիցների թե՛ կարծիքները, թե՛ դիրքորոշումները՝ ելնելով մեր ընդհանուր պատասխանատվությունից: Մենք բոլորս ծառայում ենք ժողովրդին ու մեր երկրին, ծառայում ենք սոցիալիզմին: Թե՛ կուսակցությունն է ծառայում ժողովրդին, թե՛ բոլոր ստեղծագործական ուժերն են ծառայում ժողովրդին: Այդ ծառայությունը հարկավոր է արժանավայել կերպով կրել: Արժանավայել ու արիաբար: Դա առաջինը:*

*Երկրորդ: Ես շատ գոհ եմ այն մթնոլորտից, որ տիրում էր մեր հանդիպման ժամանակ: Դա արտացոլումն է այն բանի, ինչ տեղի է ունենում երկրում, հասարակության մեջ: Ես կարծում եմ, որ առանց այդպիսի մթնոլորտի չէր լինի նաև այն տպավորությունը, որ ես ստանում եմ մեր հանդիպումից: Այս մթնոլորտը եկեք միասին պահպանենք: Պահպանենք, ամրապնդենք ու զարգացնենք: Իհարկե, մեր կոնտակտները չպետք է սահմանափակվեն միայն*



*այդպիսի խորհրդակցություններով: Կենտրոնական կոմիտեն բաց է, երբ հարկավոր է, կարելի է խորհուրդ անել: Ուստի եկեք, բարի գալուստ անկեղծ, սրտաբաց, շիտակ խոսակցության համար:*

*Դուք հսկայական պատասխանատվություն եք կրում այն բանի համար, որ հասարակության նորացման մեր քաղաքական գիծը, մեր կուրսը ուժ առնի, խորանա և ավելի ու ավելի մեծ արդյունքներ տա: Մեզ հետ, կուսակցության հետ եք դուք կրում այդ պատասխանատվությունը:*

*Մենք ընդառաջ ենք գնում մեր հեղափոխության 70-ամյա տարեդարձին: Մենք պետք է խոր ընդհանրացումներ անենք անցած ուղուց, պատմական վերլուծությունը օրգանապես շաղկապենք վերակառուցման արդի պրոբլեմների լուծման հետ: Այն ամենով, ինչով մենք հարուստ ենք, մեր մեծ, վսեմ պատմության մեջ, մենք հպարտանում ենք և պատրաստ ենք բազմապատկել մեր այդ ընդհանուր հարստությունը՝ նյութական ու հոգևոր հարստությունը: Հարկավոր է հրապարակայնության, դեմոկրատիզմի, քննադատության շրջանակներում պահպանել բացախոսության մթնոլորտը մեր հասարակության մեջ:*

*Ուստի ես ուզում եմ մեր խոսակցությունն ավարտել նրանով, ինչից սկսեցի: Մենք բարձր ենք գնահատում այն ճակատը, որ դուք պահում եք. մենք, ընկերներ, առանց այդ ճակատի գործը գլուխ բերել չենք կարող: Մենք չէինք ցանկանա, որ այդ ճակատում փոփոխություններ չլինեին, ճիշտ հակառակը. որ փոփոխությունները տեղի ունենային այն ոգով, ինչպես մենք կառուցել ենք ապագայի մեր քաղաքական գիծը: Ձեզ հաջողություններ եմ մաղթում:*

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի մասին

1987 թվականի հուլիսի 25-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը: Պլենումը քննարկեց «Հանրապետական կուսակցական կազմակերպության ձկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի պահանջների լույսով վերակառուցումը հանրապետությունում արագացնելու և խորացնելու միջոցառումների մասին» հարցը: Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Գ. Սահակյանը, «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման փականագործ-գործիքագործ ընկ. Ս. Ս. Ֆահրադյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Տ. Սարգսյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Հարությունյանը, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ապարատավարների բրիգադավար ընկ. Ս. Մ. Պետրոսյանը, ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Լ. Մկրտչյանը, ՀԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Ռ. Ա. Արզումանյանը, Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստր ընկ. Ջ. Ա. Ջանոյանը, ՀԿԿ Ամասիայի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Ա. Բագիրովը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Օհանյանը, ՀԿԿ Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Յու. Պ. Կոչետկովը, «Երարդշին» տրեստի կոմպլեքսային բրիգադի բրիգադավար ընկ. Գ. Ս. Մարգարյանը, ՀԿԿ Աբովյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Հ. Ավագյանը, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Գ. Ա. Գալոյանը, ՀԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Հ. Մուրադյանը, Արարատի շրջանի Մեծ Վեդի գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Ս. Մ. Վարդանյանը, ՀԿԿ Թումանյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ն. Ծահվերդյանը, գինձառայող ընկ. Կ. Ի. Չերեպանովը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ ընկ. Ս. Գ. Հարությունյանը, Հայկական ՍՍՀ առևտրի մինիստր ընկ. Մ. Յ. Մկրտչյանը, ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ս. Քոթանջյանը, Հայաստանի գրողների միության կուսբյուրոյի քարտուղար ընկ. Ժ. Ս. Հարությունյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, հանրապետության պետագրոարդի նախագահ ընկ. Վ. Մ. Մովսիսյանը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Հ. Մ. Ոսկանյանը, Էջմիածնի շրջանի Արշալույսի գյուղսովետի գործկոմի նախագահ ընկ. Բ. Գ. Մնացականյանը, Հայկական ՍՍՀ պետանվտանգության կոմիտեի նախագահ ընկ. Մ. Ա. Յուզբաշյանը, Երևանի «Մանկական աշխարհ» միավորման ավագ վաճառող ընկ. Վ. Ա. Մալաքյանը:

Պլենումում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ ընկ. Գ. Պ. Խարչենկոն:

Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Պլենումը քննարկված հարցի առթիվ ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումը ՀԿԿ Կենտկոմի առևտրի և կենցաղային սպասարկման բաժնի վարիչ հաստատեց ընկ. Ա. Ս. Արզումանյանին, կուլտուրայի բաժնի վարիչ՝ ընկ. Ն. Կ. Եսայանին, տնտեսագիտական բաժնի վարիչ՝ ընկ. Գ. Գ. Հարությունյանին:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատողներ ընկ. ընկ. Վ. Յա. Գերասիմենկոն, Կ. Դ. Սկորդուլին, ՍՍՀՄ պետատոմէներգահսկողության նախագահ ընկ. Վ. Մ. Մալիշևը:

---

# ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1987 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ԼՈՒՅՍՈՎ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԱՐԱԳԱՑՆԵԼՈՒ ԵՎ ԽՈՐԱՑՆԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## *Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի 1987 թ. հուլիսի 25-ի պլենումում*

Ընկերնե՛ր:

Ինչպես գիտեք, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հունիսին կայացած պլենումը քննության առավ երկրի էկոնոմիկայի կառավարումը արմատապես վերակառուցելու հարցը, որը բացառիկ կարևոր նշանակություն ունի մեր առաջընթացի, սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, սոցիալիստական հասարակության որակապես նոր վիճակի հասնելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ, ընդունված փաստաթղթերում ամփոփվեցին վերակառուցման որոշ քաղաքական արդյունքներ, որոշվեցին նրա արդի փուլի առաջնահերթ խնդիրները, բազմակողմանիորեն ու խորապես հիմնավորվեց էկոնոմիկայի կառավարման արմատական ռեֆորմի անհրաժեշտությունը, բացահայտվեց նրա էությունը, ցույց տրվեց նրա հաջող իրագործման հետ սոցիալական լուրջ պրոբլեմների լուծման դիալեկտիկական փոխադարձ կապը:

Էկոնոմիկայի կառավարումը վերակառուցելու կուսակցության մշակած կոնցեպցիան ունի կոմպլեքսային բնույթ, ներառնում է տնտեսական մեխանիզմի բոլոր տարրերի փոխկապակցված որակական կատարելագործումը: Ձեռնարկությունների ինքնուրույնության ընդլայնումը, անցումը ինքնակառավարման, տնտհաշվարկային փոխհարաբերությունների զարգացումը, տնտեսական պրակտիկայում տնտեսագիտական լծակների ու խթանների դերի շեշտակի բարձրացումը պետք է իրականացվեն պլանավորումը, գնագոյացումը, նյութատեխնիկական մատակարարումը, ֆինանսավարկային մեխանիզմը, կառավարման կազմակերպական կառուցվածքը արմատապես վերակառուցելու պայմաններում:

Կուսակցության նոր տնտեսական ստրատեգիան կդառնա մեր երկրում հիրավի հեղափոխական վերափոխումների ամուր հիմքը: Այն տնտեսական աճը կողմնորոշում է միջանկյալից դեպի վերջնական, սոցիալապես նշանակալի արդյունքներ, հասարակական պահանջմունքների ավելի լրիվ բավարարում, տնտեսավարման հուսալիորեն գործող հակածախսումային մեխանիզմի ստեղծման հիմքի վրա:

Մեր երկրի բախտի համար ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի ընդունած սկզբունքորեն կարևոր որոշումները, որոնք տեսական կայուն հիմք տվեցին արագացման ու վերակառուցման կուրսին, արժանացել են բոլոր կոմունիստների, սովետական ամբողջ ժողովրդի ջերմ հավանությանը:



Ընկերնե՛ր: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ սուր քննադատություն հնչեց մեր հանրապետական կուսակցական կազմակերպության վերաբերյալ և նրա ղեկավարության հասցեին: Արդարացիորեն նշվեց, որ վերակառուցումը մեր հանրապետությունում տեղապտույտ է տալիս: Աշխատավորները մեծ տագնապ են արտահայտում այն իրադրության համար, որ ստեղծվել է էկոնոմիկայում և հատկապես գաղափարաբարոյական ոլորտում: Միևնույն ժամանակ Հայաստանի կոմկուսի ղեկավարությունը և առաջին հերթին Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, գտնում են, որ հանրապետությունում վիճակը միանգամայն բարվոք է: Ավելին, ոմանք նույնիսկ պնդում են, թե Հայաստանում վերակառուցումն սկսվել է դեռ մինչև ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը: Հանրապետությունում հանդես են բերում ոչնչով չարդարացված հանգստություն, պատշաճ պահանջկոտություն չկա կադրերի նկատմամբ, արդյունավետ պայքար չի ծավալված կաշառակերության, սպեկուլյացիայի, պրոտեկցիոնիզմի դեմ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն գտնում է, որ հանրապետական կուսակցական կազմակերպությանը վերաբերող և նրա ղեկավարության հասցեին ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում արված սուր, պահանջկոտ քննադատությունը արդարացի է ու ժամանակին:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առջև խնդիր է դրված. խորապես վերլուծել իրադրությունը թե՛ կուսակցական կազմակերպությունում, թե՛ ամբողջությամբ վերցված հանրապետությունում, այն քննարկել սկզբունքային դիրքերից և վերակառուցմամբ զբաղվել ոչ թե խոսքով, այլ գործով:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ներկա պլենումի խնդիրը շատ պատասխանատու է: Մենք պետք է քննության առնենք հանրապետական կուսակցական կազմակերպության նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի պահանջների լույսով վերակառուցումն արագացնելու և խորացնելու անհետաձգելի միջոցառումները, որոշենք մեր խնդիրները էկոնոմիկայի կառավարման արմատական ռեֆորմի վերաբերյալ պլենումի որոշումների կատարման ուղղությամբ:

Ո՞րն է մեր աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունների պատճառը: Ինչու՞ է վերակառուցումը տեղապտույտ տալիս հանրապետությունում:

Հավանաբար ամենաճիշտ պատասխանը այսպիսին է. Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյին մի ինչ-որ փուլում չեն բավարարել հանրապետությունում տիրող իրավիճակը օբյեկտիվորեն ու քննադատաբար գնահատելու քաղաքական արիությունն ու սկզբունքայնությունը: Տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակներում պլանների ընդհանուր կատարումը, էկոնոմիկայի զարգացման տեմպային ցուցանիշները քողարկել են թերությունները, ստեղծել բարեհոգության և ինքնահանգստացման մթնոլորտ:

Կենտկոմի բյուրոն և ես՝ որպես Կենտկոմի առաջին քարտուղար, թույլ ենք տվել լուրջ վրիպում, ճիշտ չենք գնահատել նաև ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո կուսակցական կազմակերպությունում, հանրապետությունում ստեղծված իրավիճակը, այն տագնապալի միտումը, որ մեր կուսակցական կազմակերպությունը հետ է մնում գերիշխող տրամադրություններից, դինամիկ պրոցեսներից, որոնք ծավալվում են հասարակության մեջ: Մենք դանդաղ ենք յուրացրել և պրակտիկայում կիրառել գործունեության նոր մեթոդներն ու ձևերը: Մեր գործունեության, կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների գործունեության վերակառուցումը հետ է մնացել տեղի ունեցող տնտեսական, սոցիալական ու հոգևոր պրոցեսներից:

Հասկանալով կենսագործունեության տարբեր ոլորտներում խոր վերափոխումների, լճացման երևույթների արագ հաղթահարման անհրաժեշտությունը, իմանալով տնտեսական ու կուլտուրական շինարարության մեջ, կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում տեղ գտած կոնկրետ թերությունները, ինչի վրա, ի դեպ, մեր ուշադրությունն են հրավիրել սկզբնական կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում, մենք նախ և առաջ սուբյեկտիվ պատճառներով չենք կարողացել դրանք վերացնել ժամանակին ու ամբողջ ծավալով, վճռական միջոցներ ձեռնարկել թույլ տրված սխալները, վրիպումները շտկելու համար: Պրակտիկ գործունեության մեջ երբեմն գերիշխել են պահպանողականությունը, իներցիան, այն բանից հետո կանգնելու ձգտումը, ինչը չի տեղավորվել սովոր շրջանակներում:

Մեր կատարած կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը համարժեք չի եղել այն բանին, ինչ պահանջել են վերակառուցման մասշտաբայնությունն ու նշանակությունը, այն չլուծված պրոբլեմներին, որ կան մեզանում: Մենք չենք կարողացել

Ընկերնե՛ր: Խորապես հիմնավորված է հանրապետության աշխատավորների մեծ տագնապը գաղափարաքաղաքական ոլորտում տիրող իրադրության համար: Մենք պետք է խոստովանենք, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն բավականաչափ ինքնաքննադատական մոտեցում չի ցուցաբերել դաստիարակչական աշխատանքի արդյունավետության վերլուծման գործում, քաղաքական սրությամբ չի վերաբերվել բացասական երևույթների գնահատմանը, պատշաճ պահանջկոտություն չի դրսևորել գաղափարախոսական գերատեսչությունների, ղեկավար կադրերի, կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ՝ բարոյական կլիմայի, հասարակական կյանքի ամբողջ բարոյական մթնոլորտի առողջացման համար:

Մենք չենք վերացրել մի շարք էական թերություններ, որոնք բազմիցս մատնանշել է ՍՄԿԿ Կենտկոմը: Հանրապետությունում արդյունավետ պայքար չի ծավալվել կաշառակերության, սպեկուլյացիայի, պրոտեկցիոնիզմի դեմ: Արմատական բարելավում է պահանջում բարոյական, աթեիստական դաստիարակությունը: Բարեհոգության և հաշտվողականության մթնոլորտ. ահա թե ինչն է արգելակում վերակառուցումը գաղափարաքաղաքական ոլորտում:

Գաղափարադաստիարակչական աշխատանքում շատ թերություններ ու վրիպումներ ժամանակին չէին վերացվում, կուտակվում էին տարիներով, բացասաբար էին անդրադառնում հոգևոր ոլորտի վրա: Մենք գործունեության այդ կարևոր տեղամասում հանդիսամոլության, ձևամոլության, դատարկաբանության, բարեհոգության և ինքնաբավարարվածության դեմ պայքարելու անհրաժեշտության մասին խոսակցություններից այն կողմ չենք գնացել: Աշխատանքի հին, այլևս ոչ պիտանի ոճը հակասության մեջ մտավ ռեալ իրադրության, հասարակության հոգևոր պահանջմունքների, կուսակցության առաջադրած հեղափոխական խնդիրների հետ:

Այստեղ անհրաժեշտ է խոստովանել, որ գաղափարաքաղաքական ոլորտում անառողջ երևույթների հանգեցրած լուրջ պատճառներից մեկն այն է, որ կուսակցական կոմիտեները գաղափարադաստիարակչական աշխատանքը մղում էին երկրորդ պլան: Մենք լուրջ վրիպումներ ենք թույլ տվել գաղափարախոսական կադրերի ընտրության ու դաստիարակության գործում, չենք ստեղծել նրանց իրական ռեզերվ, թուլացրել ենք պահանջկոտությունը պրոպագանդայի աշխատողների նկատմամբ:

Առևտրի, կենցաղի սպասարկման բնագավառի, տրանսպորտի և սոցիալական ոլորտի մյուս օղակների լուրջ թերությունների դեմ պատշաճ ու արդյունավետ պայքարի բացակայությունը մեծապես արժեզրկեց մեր դաստիարակչական ջանքերը: Մարդիկ դադարեցին հավատալ պրոպագանդիստի, դասախոսի, լրագրողի խոսքին, որը հաճախ չէր համապատասխանում նրան, ինչ իրենք յուրաքանչյուր քայլափոխի տեսնում էին իրական կյանքում: Գաղափարախոսական աշխատանքի վերակառուցման հիմնական խոչընդոտը խոսքի խզումն է գործից:

Ցավոք, շատ կուսակցական կոմիտեներում, սովետական ու տնտեսական մարմիններում մինչև օրս խորապես չեն գիտակցել նորովի, հրապարակայնության, կարծիքների բացահայտ փոխանակման, քննադատության և ինքնաքննադատության պայմաններում աշխատելու կենսական անհրաժեշտությունը: Մենք պատշաճ ուշադրություն չենք դարձնում դաստիարակ ղեկավարների ձևավորմանը, որոնք կարողանային մարդկանց վրա ներգործել ոչ միայն կառավարման լծակներով, այլև կոլեկտիվի, ամբողջ հասարակության կենսագործունեության հարցերի ու խնդիրների նկատմամբ սուր, կարելի է ասել նույնիսկ օրինակելի քաղաքական վերաբերմունքով: Պատահական չէ, որ տեղերում շատ հարցեր առաջվա նման լուծվում են վարչակամային եղանակներով: Այդ կապակցությամբ չեն կարող չանհանգստացնել կուսակցական կոմիտեների որոշ քարտուղարների տեխնոկրատական մոտեցումները սոցիալ-տնտեսական զարգացման հրատապ խնդիրների լուծմանը:

Դրա օրինակն է կուսակցության Էջմիածնի շրջկոմի գործունեությունը (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Մ. Մխիթարյան): Շրջանում լուրջ թերություններ ու վրիպումներ կան սոցիալական, հոգևոր ոլորտում: Կապի սպասարկումով, մանրածախ առևտրի և հասարակական սննդի ձեռնարկություններով գյուղական բնակչության ապահովվածությամբ, հիվանդանոցային մահճակալների քանակով շրջանը վերջին տեղերից մեկն է գրավում հանրապետությունում: Այստեղ պատշաճ ուշադրություն չի դարձվում մշակութային լուսավորական հիմնարկների աշխատանքին, ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարին: Մարդկանց հետ տարվող քաղաքական աշխատանքում չեն հաղթահարված ձևամոլությունն ու տիրացուականությունը: Չկա անզիջում



պայքար բացասական երևույթների դեմ: Այս հարցերը դուրս են մնացել կուսակցության շրջկոմի, նրա առաջին քարտուղարի տեսադաշտից:

Վերջին տարիներին Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեները ընդունել են ոչ քիչ թվով ճիշտ որոշումներ գաղափարախոսական հարցերի վերաբերյալ: Բայց դրանցից շատերը լիովին չեն կատարվում: Օրինակ, մենք այդպես էլ չենք հասել կուլտուր-լուսավորական հիմնարկների և ակումբների աշխատանքի արմատական բարելավման: Այստեղ անմիջական մեղքը Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությանն է (ընկ. Յու. Ա. Մելիք-Օհանջանյան), քաղաքային ու շրջանային սովետների գործկոմներինը: Հանրապետության պետագրոարդը, Հայկական ՍՍՀ շինարարության մինիստրությունը, ՀԱՄԽ-ը թերագնահատում են մշակութային հիմնարկների նյութական բազայի զարգացման ու ամրապնդման՝ որպես գյուղի սոցիալական վերափոխման արագացման կարևոր միջոցի քաղաքական նշանակությունը:

Այս առումով արդարացի էր «Իզվեստիա» թերթում հրապարակված «Զվարճացան... մինչև դժբախտություն» հոդվածում արված քննադատությունը: Ապշեցուցիչ է, բայց փաստ. Էջմիածնի շրջանի Ջրառատ գյուղի մշակույթի տան դիսկոտեկում տեղի ունեցած արտակարգ պատահարը կուլտուրայի մինիստրությունը քննարկեց միայն օրերս:

Մենք պետք է հետևողական պայքար մղենք տարածված այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են կաշառակերությունը, սպեկուլյացիան, պրոտեկցիոնիզմը և սոցիալիստական ապրելակերպի մյուս հակոտնյաները: Աշխատավորներին օրինական վրդովմունք է պատճառում սոցիալական արդարության խախտումը: Մարդիկ պահանջում են խիստ, ներգործուն միջոցներ ձեռնարկել նրանց դեմ, ովքեր անաշխատ եկամուտներով են ապրում, զանազան բարիքներ են ստանում ի շրջանցումն օրենքների ու բարոյական նորմերի, թույլ են տալիս չարաշահումներ, սոցիալիստական սեփականության հափշտակումներ, հակահասարակական այլ գործողություններ: Սոցիալիստական սեփականության հափշտակումները վերջին տարիներին ավելացել են: 1986 թվականին դրանք կազմել են ավելի քան 3,8 միլիոն ռուբլի:

Մեզ դեռևս չի հաջողվել պատշաճ կարգուկանոն մտցնել մի շարք ուսումնական հաստատություններում, բժշկական հիմնարկներում, իրավապահ մարմիններում, որտեղ շորթման, կաշառակերության փաստեր են նկատվում, ծաղկում է նվիրատվությունների ու ծառայությունների մի ամբողջ համակարգ: Ոչ մի կերպ չի կարելի հաշտվել այն բանի հետ, երբ անբարոյական, հակահասարակական գործողություններ են թույլ տալիս մարդիկ, որոնք կոչված են լինելու երիտասարդության դաստիարակներ: Օրինակ, կաշառակերության համար դատապարտվել են հայկական մանկավարժական ինստիտուտի փիլիսոփայության դասախոս Գ. Փիլոյանը, նույն ինստիտուտի հոգեբանության ամբիոնի դասախոս Ա. Վարդանյանը, ժողովրդական տնտեսության ինստիտուտի ամբիոնի վարիչ Ռ. Չոբանյանը, նրա եղբայրը՝ նույն ինստիտուտի դասախոս Ֆ. Չոբանյանը:

Մենք նաև քիչ վնասներ չենք կրել այն պատճառով, որ առանձին ղեկավար աշխատողներ իրենց անվայել են պահում, արատավորող արարքներ թույլ տալիս: Պարզ է, օրինակ, որ Հայկական ՍՍՀ ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի պետական կոմիտեի նախագահը պարտավոր է իր պաշտոնի բերումով ամեն կերպ նպաստել առողջ, գինեսթափ ապրելակերպի հաստատմանը: Ընկ. Մ. Ա. Նուրիջանյանը, ի դեպ, դա պրոպագանդում է իր հրապարակային ելույթներում: Իրականում բոլորովին այլ բան է տեղի ունեցել: Վերջերս նա մեծ շուքով «տոնեց» դստեր հարսանիքը: Կազմակերպիչները, անտեսելով հասարակական կարծիքը, մի ամբողջ երեկո զբաղեցրին «Արմենիա» ռեստորանի դահլիճներից մեկը, ոգելից խմիչքներ հյուրասիրելով բազմաքանակ հյուրերի: Հիշեցնենք, որ դեռևս 1985 թվականին Կենտկոմը արդեն մեկ անգամ համեստության ու կարգուկանոնի էր կոչել ընկ. Մ. Ա. Նուրիջանյանին, երբ միջազգային մրցումների համար ձեռք բերված թանկարժեք կահույքի, գորգերի ու սպասքների մի մասը զարդարել էր նրա ծառայողական աշխատասենյակը, հանրապետության սպորտպետկոմի մյուս ղեկավարների աշխատասենյակները: Օրերս Կենտկոմի բյուրոն ընկ. Մ. Ա. Նուրիջանյանին ազատեց զբաղեցրած պաշտոնից: Սկզբնական կուսակցական կազմակերպությունը խիստ նկատողություն հայտարարեց նրան՝ գրանցելով հաշվառման քարտում:

Հասարակության առողջացման, վերակառուցման պայքարում պետք է ավելի ակտիվորեն և առարկայորեն ներգրավվեն հանրապետության մասսայական ինֆոր-

Ավագյան) չի կատարում Կենտկոմի բյուրոյի որոշումը պատերազմի և աշխատանքի վետերանների հանրապետական խորհրդին շինություն տրամադրելու մասին:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում ուղղակի ասվեց, որ հանրապետությունում արդյունավետ պայքար չի ծավալված կաշառակերության և սպեկուլյացիայի դեմ: Ինչպե՞ս կարող էր դա պատահել, եթե այդ մասին գիտեին Կենտրոնական կոմիտեում և նրա բյուրոյում, հանրապետության կառավարությունում և տեղերում: Այդ մասին գիտեին նաև ընկերներ Հ. Ս. Ծահինյանը, Ս. Ա. Օսիպյանը, Ա. Ս. Դադայանը, Ա. Ա. Գևորգյանը և, վերջապես, ընկ. Մ. Մ. Դավթյանը: Դրա բացակայությունը նրանց զգոնության բթացումն է, պատասխանատվության քաղաքական սրության կորուստը, որոնք առաջացրին տագնապալի իրավիճակ, որին առաջինն արձագանքեցին հանրապետության աշխատավորները:

Ժամանակի ոգուն հատկապես չի համապատասխանում ներքին գործերի մարմինների գործունեության մակարդակը: Վերակառուցումը չի երևում հանրապետության ներքին գործերի մինիստրության շատ ծառայությունների աշխատանքում: Չեն փոխվում ռիթմը, տրամադրվածությունը, գործի նկատմամբ աշխատողների վերաբերմունքը: Յուրաքանչյուր կատարված հանցագործության համար պատժի անխուսափելիության ապահովման խնդիրը մնում է չլուծված, շատ հանցագործություններ տարիներով չեն բացահայտվում, հանցագործներին հաջողվում է խուսափել պատասխանատվությունից: Հասկանալի է, որ հին, իրենց դարն ապրած միջոցներով ու մեթոդներով այդ խնդիրը չի լուծվի: Սակայն, դատելով ըստ ամենայնի, ներքին գործերի մինիստրության ղեկավարությունը, կոլեգիան, անձամբ մինիստր ընկ. Հ. Ս. Ծահինյանը չեն ուզում հրաժարվել դրանցից: Մոտ երկու տարի առաջ ներքին գործերի մինիստրության ղեկավարությունը Կենտկոմի վարչական մարմինների բաժնի աջակցությամբ ԲԽՍՍ վարչության պետի պաշտոնում առաջադրեց ընկ. Ն. Մ. Մինասյանին, ենթադրելով, որ նա ընդունակ է կատարելու այդ ծառայության վրա դրված պատասխանատու խնդիրները: Այսօր մենք պետք է ասենք, որ այդ խնդիրները նա չի կատարել: Ծառայությունը գործում է ոչ օպերատիվորեն և սակավ արդյունավետ, խիստ անբավարար է օգտագործում տրված լիազորությունները անաշխատ եկամուտների դեմ, հափշտակումները, կաշառակերությունը, սպեկուլյացիան, առևտրի կանոնների խախտումները, սպասարկումների ոլորտում կատարվող դրամաշորթումները, մյուս չարաշահումները կանխելու, ժամանակին հայտնաբերելու և կասեցնելու համար մղվող պայքարում:

Աշխատավորների արդարացի վրդովմունքն է հարուցում ԲԽՍՍ-ի, պետավտոտեսչության ստորաբաժանումների որոշ աշխատողների բարոյական կերպարը: Եզակի չեն այն դեպքերը, երբ այդ ծառայությունների աշխատողները իրենք են մտնում հանցագործարքի մեջ, հետապնդելով շահադիտական նպատակներ. այդ մասին ահազանգերը շատ-շատ են: Այսպիսի իրավիճակը, թվում է, քիչ է անհանգստացնում ներքին գործերի մինիստրության քաղապարատին և կուսակցական կոմիտեին: Կուսակցական կոմիտեի քարտուղար ընկ. Ս. Ա. Մանուկյանը իրեն դրել է անտարբեր հայեցողի, կողմնակի դիտորդի տեղ, որն ըստ էության լավ չի հասկանում մինիստրության կուսկազմակերպության հրատապ խնդիրները:

Հարցերը, որոնց լուծումը պահանջում է դատախազության մարմինների միջամտություն, բավական շատ են կուտակվել: Հանրապետության դատախազ ընկ. Ս. Ա. Օսիպյանը, կոլեգիան, դատախազությունների կուսակցական կազմակերպությունները պետք է խորապես պարզեն համակարգի գործերի վիճակը, վերլուծեն օրինականության նկատմամբ դատախազական հսկողության վիճակը, քննադատաբար վերանայեն և գնահատեն աշխատանքի ոճն ու մեթոդները, նոր մոտեցումներ որոնեն պետության շահերի և քաղաքացիների իրավունքների հուսալի պաշտպանության միջոցառումների իրականացման նպատակով: Էական բարելավման կարիք ունի հանրապետության արդարադատության մինիստրության և գերագույն դատարանի աշխատանքը:

Վճռական քայլեր են հարկավոր իրավապահ մարմինների կադրերի որակական կազմը արմատապես բարելավելու, դրանք քաղաքականապես հասուն, բարոյապես անաղարտ մարդկանցով, անկաշառ, արդարության սուր զգացում ունեցող մարդկանցով համալրելու ուղղությամբ:

Ընկերնե՛ր: Հանրապետության կուսակցական կազմակերպությունում անցկացվում են քաղկոմների, շրջկոմների պլենումներ, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներ: Դրանք ակտիվորեն քննարկում են ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի արդյունքները: Կոմունիստները անաչառ քննադատություն են ուղղում Կենտրոնական կոմիտեի, հանրապետության Գերագույն սովետի նախագահության, Մինիստրների խորհրդի, մինիստրությունների ղեկավարության, քաղկոմների, շրջկոմների քարտուղարների հասցեին, բոլոր նրանց հասցեին, ումից մեծապես կախված է վերակառուցման հաջողությունը: Կարևոր է, որ նրանք միահամուռ են իրենց գնահատման մեջ. հանրապետական կուսակցական կազմակերպությանը վերաբերող և նրա ղեկավարության հասցեին արված քննադատությունը արդարացի է և ժամանակին: Նրանք հասկանում են, որ աշխատանքում բեկման հասնելու համար հարկավոր է հեռանալ ինքնահանգստացումից, հարկավոր է սովորել իրերն անվանել իրենց անուններով՝ հաջողությունները՝ հաջողություններ, թերությունները՝ թերություններ, սխալները՝ սխալներ, ինչպես դա անում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն: Դրանում դրսևորվում են հանրապետական կուսակցական կազմակերպության հասունությունը, առաջացած պրոբլեմները լուծելու, վերակառուցումը ռեալ կերպով իրականացնելու նրա ընդունակությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը որոշում ընդունեց 1988 թվականի հունիսի 28-ին անցկացնելու Սովետական Միության կոմունիստական կուսակցության XIX համամիութենական կուսակցական կոնֆերանս, որտեղ ենթադրվում է քննության առնել ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների իրականացման ընթացքը, տասներկուերորդ հնգամյակի առաջին կեսի հիմնական արդյունքները, վերակառուցման պրոցեսի խորացման ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների խնդիրները, քննարկել կուսակցության և հասարակության կյանքի հետագա դեմոկրատացման հարցերը:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի որոշումները գործողությունների մարտական ծրագիր են բոլոր կուսակցական կազմակերպությունների համար: Մեզ համար այդ որոշումներն ունեն առանձնահատուկ, սկզբունքային նշանակություն: Եվ կասկած չկա, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ներկա պլենումը կուսակցական հետևություններ կանի ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի պահանջներից:

Պլենումի մասնակիցները իրենց ելույթներում կուսակցական կազմակերպության և հանրապետության իրավիճակի քննադատական վերլուծությամբ, թերությունների քննադատությամբ կօգնեն գտնելու թերությունների հաղթահարման, մեր աշխատանքի բարելավման կոնկրետ ուղիներ: Վերակառուցման արագացման և խորացման համար մղվող պայքարը կհամախմբի հանրապետական կուսակցական կազմակերպությունը: Նա բոլոր ջանքերը կգործադրի պատմական խնդիրների բարձրության վրա լինելու համար:

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ VI ՊԼԵՆՈՒՄԻ

# ՈՐՈՇՈՒՄԸ

## «ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1987 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ԼՈՒՅՍՈՎ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԱՐԱԳԱՑՆԵԼՈՒ ԵՎ ԽՈՐԱՑՆԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ»

Լսելով և քննարկելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Դեմիրճյանի «Հանրապետական կուսակցական կազմակերպության նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի պահանջների լույսով վերակառուցումը հանրապետությունում արագացնելու և խորացնելու միջոցառումների մասին» զեկուցումը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը նշում է, որ հանրապետական կուսակցական կազմակերպության ու նրա ղեկավարության հասցեին ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում արված սուր, սկզբունքային քննադատությունը արդարացի է ու ժամանակին:

Վերակառուցումը հանրապետությունում տեղապտույտ է տալիս: Էկոնոմիկայում և հատկապես գաղափարաքաղաքական ոլորտում ստեղծված իրադրությունը մեծ տագնապ է առաջացնում: Հանդես է բերվում ոչնչով չարդարացված հանգստություն, կադրերի նկատմամբ պատշաճ պահանջկոտություն չկա, արդյունավետ պայքար չի ծավալված կաշառակերության, սպեկուլյացիայի, պրոտեկցիոնիզմի դեմ:

Էկոնոմիկայի զարգացման կարևոր շատ ուղղություններում լճացման երևույթները դանդաղ են հաղթահարվում, հետևողականորեն չեն լուծվում նրա ինտենսիֆացման հարցերը: Արտադրության վիճակի որակական փոփոխություն տեղի չի ունեցել: Տեխնիկայի ու տեխնոլոգիայի, արտադրության կազմակերպման ու կուլտուրայի մակարդակը տարբեր ճյուղերի շատ ձեռնարկություններում չի համապատասխանում արդի պահանջներին, չի կարող ապահովել աշխատանքի արդյունավետության և արտադրանքի որակի շեշտակի բարձրացում: Հետևողականորեն չեն լուծվում արտադրական ապարատի արդիականացման խնդիրները, տարեցտարի չեն կատարվում նոր տեխնիկայի արմատավորման պլանները, որն անդրադառնում է աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի վրա:

Անթույլատրելիորեն դանդաղ է ընթանում վերակառուցման պրոցեսը ագրոարդյունաբերական համալիրում: Ակտիվորեն չեն արմատավորվում տնտեսավարման նոր ձևերն ու մեթոդները: Չի ապահովվում հանրապետության պարենային ծրագրով սահմանված առաջադրանքների կատարումը: Նվազել են հանրային հատվածում գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճի տարեկան միջին տեմպերը, ֆոնդահատույցը, բարձրացել է գյուղատնտեսական շատ մթերքների ինքնարժեքը:





Անբավարար վիճակ է ստեղծվել կապիտալ շինարարության մեջ: Պլանների տևական թերակատարումը սովորական երևույթ է դարձել: Միայն վերջին վեց տարում տարեկան պլանների գումարով չի իրացվել 358 միլիոն ռուբլի կապիտալ ներդրում, չի ապահովվել 390 հազար քառակուսի մետր բնակտարածության, 1700 տեղով մանկական նախադպրոցական հիմնարկների, 400 մահճակալով հիվանդանոցների, սոցիալական ու կուլտուր-կենցաղային այլ օբյեկտների գործարկումը: Արդյունավետորեն չեն օգտագործվում խոշորապանել տնաշինության կարողությունները:

Լուրջ վրիպումներ են թույլ տրվել սոցիալական ոլորտի զարգացման գործում: Հանրապետությունը միութենական միջին ցուցանիշներից հետ է մնում բնակարանների, մանկապարտեզների, հիվանդանոցների, պոլիկլինիկաների, առևտրի, կապի օբյեկտների, մշակույթի հիմնարկների ապահովվածությամբ: Առևտրի ու սպասարկման ոլորտը չի ապահովում բնակչության սպասարկման արմատական բարելավման այսօրվա պահանջների կատարումը: Ցածր է բուժպրոֆիլակտիկ օգնության և դեղորայքային ապահովման մակարդակը: Շատ թերություններ ու բացասական երևույթներ են կուտակվել հասարակական տրանսպորտի, կապի ձեռնարկությունների, կոմունալ տնտեսության աշխատանքում: Դեռևս սրությամբ է ծառացած շրջակա միջավայրի պահպանության պրոբլեմը:

Գաղափարախոսական աշխատանքի վերակառուցմանը խոչընդոտում է անտարբերության ու հաշտվողականության մթնոլորտը: Գաղափարադաստիարակչական աշխատանքում եղած շատ թերություններ ու վրիպումներ ժամանակին չեն վերացվել: Արմատական բարելավում է պահանջում բարոյական դաստիարակությունը: Հանրապետությունում գոյություն ունեն մեր հասարակությանը խորթ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են պետական սեփականության հափշտակումները, կաշառակերությունը, սպեկուլյացիան, չարաշահումները առևտրում, կենցաղային սպասարկման մեջ, բժշկական հիմնարկներում, տրանսպորտում, սոցիալական արդարության խախտումները: Հասարակության առողջացման, վերակառուցման համար մղվող պայքարում ակտիվ դիրք չեն գրավել մասսայական ինֆորմացիայի միջոցները:

Կենտկոմի պլենումը գտնում է, որ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո ժամանակին, սկզբունքորեն և քննադատաբար չգնահատեց հանրապետությունում ստեղծված իրադրությունը, չմշակեց էկոնոմիկայում լճացման երևույթները հաղթահարելու և սոցիալ-բարոյական ոլորտում թերությունները վերացնելու, վերակառուցումն արագացնելու և խորացնելու հստակ գիծ: Կուսակցության ոչ բոլոր քաղկոմները, շրջկոմները լիովին հասկացան, խորապես գիտակցեցին և կոնկրետ որոշեցին իրենց դիրքերը, իրենց վերաբերմունքը արագացման, վերակառուցման նկատմամբ: Ղեկավար կադրերի ընտրության և տեղաբաշխման ժամանակ միշտ չէ, որ խորապես ուսումնասիրվել են նրանց քաղաքական, բարոյական, գործարար հատկանիշները: Ապահովված չէ նրանց հաջորդայնությունը, թարմ ուժերի ներհոսը: Կադրերի դաստիարակմանը մեծ վնաս է պատճառում ձախողված, իրենց վարկաբեկած աշխատողներին ղեկավարի մի բազկաթոռից մեկ ուրիշին նստեցնելը: Արմատախիլ չեն արվել պրոտեկցիոնիզմի փաստերը:

Հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեության մեջ եղած թերությունները մեծապես պայմանավորված են սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ցածր մակարդակով, որոնցից շատերը հաշտվողական դիրք են բռնել, անզիջում պայքար չեն մղում լճացման, անտարբերության, բյուրոկրատիզմի դեմ, կուսակցական խիստ պատասխանատվության չեն ենթարկում այն ղեկավարներին, ովքեր իրենց գործողություններով արգելակում են վերակառուցումը:

ՀԿԿ Կենտկոմի պլենումը գտնում է, որ վերակառուցման դանդաղ ընթացքի համար պատասխանատու է նաև հանրապետության Մինիստրների խորհուրդը, որը չի կարողացել կարգավորել մինիստրությունների ու գերատեսչությունների արդյունավետ աշխատանքը, բարձրացնել նրանց ղեկավարների անձնական պատասխանատվությունը: Ցածր է կատարողական կարգապահությունը: Կառավարության շատ որոշումներ չեն կատարվում, մնում են թղթի վրա:

Առանց անհրաժեշտ դինամիզմի ու ակտիվության է ընթանում ժողովրդական դեպուտատների սովետների գործունեության վերակառուցումը: Քիչ չէ քարացածությունն ու ձևականությունը արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում: Բավարար ակտիվությամբ չեն վերակառուցվում ժողովրդաների աշխատանքում:

թվականից նրանց փոխադրումը լրիվ տնտեսական հաշվարկի և ինքնաֆինանսավորման իրականացվի ոչ ձևականորեն: Ապահովել ժողովրդական տնտեսության ճյուղերի կազմակերպական կառուցվածքների արմատական վերակառուցումը, էականորեն պարզեցնել դրանք, կրճատել կառավարման ապարատի թվակազմը, ընդ որում վերացնել գերատեսչական կրկնորդումը: Անհրաժեշտ նախադրյալներ նախապատրաստել պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքի կիրառման համար:

6. Կուսակցական կոմիտեներին, սովետական, տնտեսական մարմիններին՝ ապահովել սիստեմային մոտեցում տնտեսավարման նոր պայմաններին ձեռնարկությունների և կազմակերպությունների կոլեկտիվների փոխադրման նախապատրաստության նկատմամբ, մանրազնին քննության առնել նրանց պատրաստությունը դրան: Սկզբունքորեն գնահատել և օպերատիվորեն վերացնել առկա թերությունները, հաստատակամորեն ներդնել վերակառուցման առաջավոր փորձը: Այդ ամբողջ աշխատանքը պետք է կատարվի լայն դեմոկրատիայի և հրապարակայնության մթնոլորտում: Անհրաժեշտ է վերջ դնել ընդունված որոշումների կատարման գործում դանդաղկոտությանը, գործնականորեն արձագանքել քննադատությանը, առանձնապես ներքևից եկող քննադատությանը, չխուսափել դիսկուսիաներից, կարծիքների և դիրքորոշումների բախումից:

* * *

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորներն իրենց ուժերն ու եռանդը կգործադրեն լուծելու կուտակված պրոբլեմները, կհաղթահարեն էկոնոմիկայի զարգացման գործում և գաղափարաբարոյական ոլորտում տեղ գտած թերությունները: Հանրապետական կուսակցական կազմակերպությունը կապահովի ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի պահանջների անշեղ կենսագործումը, հանրապետության աշխատավորներին կմոբիլիզացնի մեծ Հոկտեմբերի 70-ամյակն արժանավայել դիմավորելու համար:

---



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ԲԱՇԽՄԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

**Մ. ՉՈԲԱՆՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու**

**ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ** բարդ և բազմակողմ պրոցես է, որը որակական խոր փոփոխություն է հարուցում տնտեսական և արտադրական պոտենցիալում, կառուցվածքային տեղաշարժեր՝ հասարակության արտադրողական ուժերում, գիտատեխնիկական պրոցեսի արագացման, արտադրական և բաշխման հարաբերությունների կատարելագործման հիման վրա: Դրան են նպատակամղված ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումի որոշումները կարգավորված տնտեսական մեխանիզմի, նրա մեթոդների ու գործիքակազմի համակարգի մշակման ու ներդրման, որակական տնտեսական աճի ուժեղացման, հասարակական արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության արմատական բարձրացման վերաբերյալ:

Գիտականորեն հիմնավորելով էկոնոմիկայի հեղափոխական վերափոխումների անհրաժեշտությունը՝ կուսակցությունը գտնում է, որ անցյալում տեսական թերամշակումները բացասական ազդեցություն են ունեցել գործնական հարցերի լուծման վրա: Տնտեսավարման և կառավարման բնագավառում գործում էին հնացած մեթոդներ, արտադրության և բաշխման մեջ առաջացած հարաբերությունները չէին համապատասխանում հասարակության պահանջներին, աշխատանքի խթանումն ու արտադրության պրոցեսը հիմնականում կողմնորոշված էին քանակական, էքստենսիվ զարգացմանը:

Էկոնոմիկայի վերակառուցումը, արտադրության ինտենսիվ տիպի ձևավորումը, արդյունավետության բարձրացմանն ուղղված տնտեսական նոր մեխանիզմի ստեղծումը կանխորոշում են բաշխման հարաբերությունների կատարելագործման բնույթը և ուղիները, որոնք, ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում, ակտիվ ներգործություն են ունենում հասարակական արտադրության զարգացմամբ կոլեկտիվ և անհատական շահագրգռվածության աճի, մարդկանց կենսամակարդակի և ապրելակերպի վրա: Հասարակական արդյունքի և ազգային եկամտի առավել արդյունավետ բաշխման հետևողական գծի անցկացումը հիմնվում է այն բանի վրա, որ բաշխման մեխանիզմը հուսալի արգելափակոց հանդիսանա անաշխատ եկամուտների, աշխատանքի վարձատրությունում հավասարեցման առջև, խիստ վերահսկողություն հաստատի աշխատանքի չափի և սպառման չափի վրա՝ միաժամանակ ուժեղացնելով կոլեկտիվների և յուրաքանչյուր աշխատողի շահագրգռությունը ժողովրդատնտեսական լավագույն արդյունքների ձեռքբերման նկատմամբ (տե՛ս ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 206):

Վերջնական հասարակական արդյունքի և ազգային եկամտի (վերստեղծված արդյունքի) բաշխումը արտադրության գլխավոր մասնակիցների՝ պետության, տընտեսական և արտադրական օղակների, աշխատավորների տարբեր խավերի միջև. վերարտադրության ինտենսիվ տիպի ձևավորման ու ծավալման պայմաններում, սկզբնավորում և եզրափակում է այդ պրոցեսը, որը բնորոշում է ոչ միայն վերարտադրության էությունը և դինամիկան, այլև նրա նպատակամղվածությունը բարձր

արդյունավետության ապահովմանը, անձնական և հասարակական պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը:

Սպառողական բարիքների բաշխման հարաբերությունները տնտեսական ու սոցիալական հիմնավորումների ու արտադրության պայմանների առանցքն ու շարժիչ ուժն են: Դրանք արտացոլում են սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գլխավոր սկզբունքներն ու բովանդակությունը, աշխատանքի բաշխման օրենքի իմաստը: Սակայն ճիշտ է նաև այն, որ նյութական արտադրության բնագավառը, այստեղ առաջացած արտադրական հարաբերությունները վճռորոշ են բաշխման հարաբերությունների նկատմամբ, որոնք իրենց հերթին ակտիվորեն ներգործում են արտադրության զարգացման վրա, բայց կարող են նաև թուլացնել նրա աճը: Այդ նկատառումով էկոնոմիկայի վերակառուցման պայմաններում նոր ձևով են ծառանում բաշխման հարաբերությունների ամբողջ համակարգի գործողության հարցերը, դրանց ազդեցությունը, արդյունավետության տեմպերի և աճի արագացման, արտադրության և սպառման միջև համամասնությունների ու հարաբերակցությունների կատարելագործման վրա: Դրանց ներգործությունը առավել կարևոր է թողարկվող արտադրանքի որակի ու տեսականու, արտադրական կարողությունների նորացման և տեխնիկական վերազինման, ռեսուրսախնայողության, բարձր արտադրողական աշխատանքի խթանման վրա: Խոսքն ամենից առաջ վերաբերում է հիմնական արտադրական օղակներին, ինչպես նաև բոլոր արտադրական բջիջների տնտեսական գործունեությանը:

Երկրի ժողովրդական տնտեսությունում իրականացվում է նյութատեխնիկական բազայի և արտադրության արմատական վերակառուցում՝ գիտատեխնիկական առաջադիմության, կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության փոփոխման հիման վրա: 1986 թ. ազգային եկամուտն աճեց 4,1, արդյունաբերական արտադրանքը՝ 4,9 տոկոսով, որն ամենաբարձրն էր վերջին ինը տարում:

Կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալում տեխնիկական վերազինման և վերակառուցման բաժինը հասավ 42 տոկոսի՝ 1980 թվականի 32 տոկոսի դիմաց: Հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ստացվեց ազգային եկամտի աճի մոտ 94 տոկոսը՝ տասնմեկերորդ հնգամյակի 87 տոկոսի փոխարեն: Կրճատվել է ազգային եկամտի էներգատարությունը, մետաղատարությունը: Վառելիքի և էներգիայի պահանջմունքների աճի 42 տոկոսն ապահովվեց դրանց խնայողության հաշվին:

Հայկական ՍՍՀ-ում 1986 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, գործող ձեռնարկությունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանն ուղղված կապիտալ ներդրումների ծավալը մեծացավ 338 միլիոն ռուբլով կամ 17,6 տոկոսով, արդյունաբերության մեջ ներդրվեց 7,5 հազար գիտատեխնիկական միջոցառում, որը հնարավորություն տվեց պայմանականորեն ազատել 7,1 հազար աշխատողի, ապահովել 67 միլիոն ռուբլու տնտեսական արդյունք: Այդ միջոցառումների ներդրման շնորհիվ այստեղ ապահովվեց աշխատանքի արտադրողականության ընդհանուր աճի 40 տոկոսը:

Սակայն արտադրության ինտենսիվացման նյութական հիմքերի ստեղծմամբ չեն սպառվում արդյունավետության աճի բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները, չի ավարտվում տնտեսական հարաբերությունների կատարելագործումը: Ընդ որում վճռական նշանակություն են ստանում տնտեսավարման հոգեբանության վերակառուցման անհրաժեշտությունը, մարդկային գործոնի ակտիվացումը, ձեռնարկությունների ինքնուրույնության, սոցիալիստական նախաձեռնողականության սահմանների ընդլայնումը:

Սովետական էկոնոմիկան առավելապես ինտենսիվ զարգացման ուղու վրա փոխադրելու, գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու կուսակցության կուրսը նախատեսում է կառավարման ու տնտեսավարման ամբողջ համակարգի վերակառուցման տեսական ու գործնական հարցերի լուծման նկատմամբ նոր մոտեցումների հիմնավորում: Այստեղ առաջին պլան են մղվում բաշխման հարաբերությունների, գնագոյացման կատարելագործման, արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների արագ ներդրման համար լավագույն պայմանների ստեղծման, բարձր արտադրողական աշխատանքի խթանման պրոբլեմները:

Սոցիալիզմի գերագույն նպատակի իրագործումը՝ ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը, դարձել է սոցիալ-տնտեսական զարգացման արագացման քաղաքական ծրագիրը: Այն կիրականացվի էկոնոմիկայի աճի,



նրա տեմպերի ու արդյունավետության բարձրացման միջոցով՝ գիտատեխնիկական առաջադիմության, արտադրության տեխնիկական վերազինման ու վերակառուցման, ստեղծված արտադրական պոտենցիալի ինտենսիվ օգտագործման, էկոնոմիկայի սոցիալական կողմնորոշման ուժեղացման, արտադրության կազմակերպման, աշխատանքի խթանման, արդյունավետ ձևերի ներդրման հիման վրա: Այլ կերպ ասած, ուշադրության կենտրոնը քանակական ցուցանիշներից փոխադրվում է որակի և արդյունավետության, միջանկյալներից՝ վերջնական արդյունքների վրա: Հենց դա էլ կազմում է էկոնոմիկայի ինտենսիվ տիպի առավել կարևոր կողմերից մեկը՝ տնտեսական աճի նոր որակը, որն արտացոլում է արտադրության ինտենսիվացման և նրա արդյունավետության սերտ փոխառնչությունը: Հենց այս տեսանկյունից էլ պետք է քննարկել արտադրության ինտենսիվացման էությունը, նրա մակարդակն ու աստիճանը, որոնք ապահովում են տնտեսական շրջանառության մեջ ներգրավված ռեսուրսներից ստացվող արտադրանքի միավորի հաշվով աշխատանքի առավելագույն չափով հնարավոր վերջնական արդյունքը: Դրա հետ մեկտեղ, արտադրության ինտենսիվացումը, որպես վերարտադրության նոր տիպ, միաժամանակ պետք է ապահովի հասարակականորեն անհրաժեշտ ծախսումների նվազումը, այսինքն՝ արտադրանքի միավորի վրա գործադրվող կենդանի և առարկայացված աշխատանքի հարաբերական ու բացարձակ խնայողությունը, քանի որ վերջնական արդյունքների աճը, հասարակական և անձնական պահանջմունքների առավելագույն բավարարումը նյութական ու աշխատանքային ծախսումների ծավալի մեխանիկական մեծացում չեն նշանակում: Ընդ որում արտադրանքի որակի բարձրացումը, արտադրության ընդլայնումն ու կառուցվածքի կատարելագործումը, հասարակական և անձնական դինամիկ պահանջմունքներին նրա ճկունորեն հարմարվելը տեղի են ունենում հիմնական արտադրական ֆոնդերի, առանձնապես դրանց ակտիվ մասի արագ վերահագեցման և լավագույն կիրառման, նյութական, շրջանառու ռեսուրսների, բանվորական ուժի և ժամանակի արդյունավետ օգտագործման շնորհիվ: Այդ գործում կարևոր նշանակություն ունի վերարտադրության նյութաիրային և արժեքային տարրերի խիստ հաշվեկշռվածության, վերջնական արտադրանքի բաշխման ու վերաբաշխման տնտեսապես հիմնավորված համամասնությունների, հասարակական սպառողական արժեքների արտադրության վրա կատարվող ծախսումների հետ այդ արժեքների աճի օպտիմալ հարաբերակցությունների սահմանումը:

Այս հարցերի լուծման, հասարակության որակական նոր վիճակի ձեռքբերման գործում առանձնակի նշանակություն է ստանում հուսալիորեն գործող տնտեսական մեխանիզմի կարգավորումը: Տնտեսավարման ամբողջական, ճկուն համակարգի ստեղծումով, արտադրական և բաշխման հարաբերությունների կատարելագործմամբ են պայմանավորված, առաջին հերթին, սոցիալիզմի հնարավորությունների լիակատար իրականացումը, դրանց համարժեքությունը արտադրողական ուժերի մակարդակին, միտումը տնտեսական աճի որակական ներգործության ուժեղացմանը: Առանձնապես կարևոր է այդ մեխանիզմի նպատակամղվածությունը արտադրության մեջ լիակատար տնտհաշվարկի, ինքնածախսածածկման, ինքնաֆինանսավորման, գիտականորեն հիմնավորված տնտեսական նորմաների կիրառմանը՝ ծախսումների համեմատությամբ ժողովրդատնտեսական արդյունքի առաջանցիկ աճի ապահովմամբ: Դա կպահանջի տնտեսական մեխանիզմի գործողության այնպիսի ընդգրկում և ճշտություն, որը գործեր միայն որակի, արտադրողականության, արդյունավետության բարձրացման, նորացման, ռեսուրսախնայողության ուղղությամբ:

Տնտհաշվարկի խորացումը, միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների փոխադրումը ինքնածախսածածկման ու ինքնաֆինանսավորման տնտեսական կարևոր հիմք են բաշխման հարաբերությունների համակարգի կատարելագործման համար:

Էկոնոմիկայի վերակառուցման, սոցիալիստական արտադրության ինտենսիվացման պայմաններում տնտեսավարման մեթոդների, բաշխման հարաբերությունների կատարելագործման ասպարեզում առանձնահատուկ դեր է պատկանում տնտեսական նորմատիվների համակարգին: Այդպիսի մոտեցումը, որպես գիտական սոցիալիստական պլանավորման բաղկացուցիչ մաս, օգտագործվում է արտադրության զարգացման և արտադրանքի բաշխման համամասնության ապահովման, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների ծախսման ու աշխատավորների գործունեության արդյունքների կարգավորման համար: Տնտեսական նորմատիվների և նորմաների կիրառման ընդլայնումը, դրանց գիտական հաշվարկային

տական սկզբունքների խստիվ պահպանում, նյութական շահագրգռվածություն և բարոյական խրախուսում՝ հիմնված օբյեկտիվ տնտեսական օրենքների, ամենից առաջ՝ սոցիալիզմի հիմնական օրենքի և ըստ աշխատանքի բաշխման օրենքի գործողության ու պահանջների վրա: Կարևոր է նշել, որ սոցիալիստական հասարակարգի կատարելագործման պայմաններում էլ այդ սկզբունքի իրականացումը տևական ժամանակահատված է նախատեսում:

Սակայն միշտ և ամենուր չէ, որ հիմնական սկզբունքի պահանջները լրիվ կատարվում են, այդ պատճառով երբեմն բարձրարտադրողական ու որակյալ աշխատանքը չի վարձատրվում համապատասխան ձևով, իսկ աշխատավարձի չափը դառնում է աշխատանքի ծախսումներին և թողարկված արտադրանքի որակին ոչ համարժեք:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում նշվեց, որ բարձր արտադրողական աշխատանքի նյութական ու բարոյական խթանման քաղաքականությունը հետևողականորեն չի իրագործվել, պարգև-հավելումների չհիմնավորված խոշոր գումարներ են վճարվել, ուժեղացվել են խնամառուական տրամադրությունները, մարդկանց գիտակցության մեջ սկսել է արմատավորվել «համահարթման» հոգեբանությունը, որոնք վնաս են հասցրել այն աշխատողներին, ովքեր ի վիճակի էին ավելի լավ աշխատել: Աշխատանքի չափի և սպառման չափի օրգանական առնչության խախտումը ոչ միայն ձևափոխում է աշխատանքի հանդեպ վերաբերմունքը՝ կասեցնելով նրա արտադրողականության աճը, այլև հանգեցնում սոցիալական արդարության սկզբունքների խեղաթյուրման, իսկ դա արդեն քաղաքական մեծ նշանակություն ունեցող հարց է: Խնդիր է դրված մեծացնել ըստ աշխատանքի բաշխման խթանիչ նշանակությունը, բարձրացնել մարդկային գործոնի դերը սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ասպարեզում: Այդ առնչությամբ և «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների» պահանջի լրիվ իրականացման համար անհրաժեշտ է նախատեսել նախաձեռնողականության և ընդունակությունների պլանաչափ, անընդմեջ զարգացում, աշխատողների մասնագիտական մակարդակի, նրանց ձեռներեցության և պատասխանատվության բարձրացում այն հաշվով, որպեսզի հասարակության գլխավոր արտադրողական ուժը ունենա համակողմանի զարգացման բոլոր պայմանները: Այլ կերպ ասած, աշխատանքի բարձր արտադրողականության և նրա որակի ապահովման համար ամենից առաջ անհրաժեշտ է ըստ ամենայնի կատարելագործել մարդկանց ուսուցման, առանձնապես կրթության տեխնիկական (տեսական ու գործնական) հիմքերը՝ կարևոր ուշադրություն դարձնելով ուսուցման և աշխատանքի արտադրողականության միակցմանը՝ որպես ժամանակակից հասարակության վերակառուցման հզորագույն միջոցներից մեկի (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, с. 31): Այս պրոբլեմի հրատապությունը պայմանավորված է հանրակրթական և պրոֆեսիոնալ-տեխնիկական դպրոցի ռեֆորմի կենսագործմամբ:

Հիմնական սկզբունքի երկրորդ մասը՝ «Յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի», ըստ էության, ներկայացնում է աշխատանքի բաշխումը, որն արտահայտում է նյութական բարիքների և ծառայությունների նկատմամբ արտադրողների անմիջական հասարակական վերաբերմունքը: Ըստ աշխատանքի բաշխումը կատարվում է ապրանքադրամական ձևով, որը պայմանավորված է նրանով, որ սոցիալիզմի օրոք աշխատանքը մնում է որպես կենսապահպանման միջոց և նյութական բարիքների ու ծառայությունների բաշխման հիմնական չափանիշ: Աշխատանքի վարձատրությունը՝ որպես ըստ աշխատանքի բաշխման կոնկրետ դրսևորում, հանդես է գալիս իբրև աշխատավորների եկամուտների գլխավոր (բայց ոչ միակ) աղբյուր, բնակչության անձնական պահանջմունքների բավարարման հիմք: Հետևաբար, հասարակությանն անհրաժեշտ բարձրարտադրողական աշխատանքի պահպանման և զարգացման համար պետք է մշակել նյութական խթանման ցուցանիշները, որոնց միջոցով գնահատվեն ձեռքբերված արդյունքները, աշխատաժամանակի, արտադրության միջոցների ու առարկաների ինտենսիվ և արդյունավետ օգտագործումը, իրականացվի շերտավորված, ստույգ հաշվառման վրա հիմնված անհատական և կոլեկտիվ (բրիգադային) կապալի նյութական վարձատրություն: Այդ նպատակով կիրառվում են նյութական արտադրության ճյուղերում աշխատողների աշխատավարձի բարձրացման նոր սկզբունքներ: Նախատեսվում է աշխատավարձի խիստ կախվածություն սահմանել աշխատանքի քանակից և որակից, ուժեղացնել յուրաքանչյուրի նյութական պատասխանատվությունը, կատարելագործել աշխատանքի վարձատրու-



թյան ամբողջ կազմակերպումը, մեծացնել տարիֆային համակարգի պարզեցման, խրախուսական լրացուցիչ վճարումների ու հավելումների դերը, բարձրացնել աշխատանքի նորմավորման մակարդակը: Բանվորների տարիֆային դրույքները բարձրացվում են միջին հաշվով 20—25 տոկոսով, ղեկավարների, մասնագետների և ծառայողների պաշտոնական դրույքները՝ 30—35 տոկոսով: Այս ամենը պետք է իրականացվի սկզբունքորեն նոր հիմքի վրա, ոչ թե կենտրոնացված միջոցառումների հաշվին, այլ աշխատանքի արդյունավետության բարձրացման, բոլոր ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, աշխատավորական կոլեկտիվների տնտեսական գործունեության բարելավման և միայն նրանց վաստակած միջոցների հիման վրա:

Լիակատար տնտհաշվարկի, ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման սկզբունքների կիրառումը պայմաններ է ստեղծում սերտորեն զուգակցելու արտադրության վերջնական արդյունքներն այն ֆոնդերի հետ, որոնք ձևավորվում են նրա զարգացման, աշխատանքի վարձատրության, նյութական խրախուսման և սոցիալ-կուլտուրական սպասարկման համար: Այսպիսի պայմաններում յուրաքանչյուր արտադրական բջջի համար ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման սկըզբունքները կարող են հիմք ծառայել, որպեսզի կոլեկտիվների աշխատանքային գործունեության վերջնական արդյունքների հաշվին, ամենից առաջ տեխնիկապես վերակառուցվեն և վերազինվեն գործող արտադրական կարողությունները, երկրորդ, իրականացվի աշխատանքի այնպիսի վարձատրություն, որի մակարդակն ու չափը ամբողջովին կախված լինեն բարձր արդյունքների ձեռքբերման գործում անձնական և կոլեկտիվ ներդրումից, երրորդ, լուծվեն կոլեկտիվի սոցիալական զարգացման հարցերը, բավարարվեն նրա հարաճուն պահանջմունքները: Այդպիսի մոտեցումը, գործնականում նրա խստիվ պահպանումը հնարավորություն կտա նոր ստեղծված արդյունքի բաշխումը իրագործել կատարված աշխատանքի քանակին ու որակին համապատասխան, հաղթահարել համահարթման միտումը վարձատրման գործում, ինչպես նաև կայուն արգելափակոց կանգնեցնել ոմանց փատնողականության և դանդաղկոտության պատճառով առաջացած ծախքերը ուրիշների աշխատանքային ջանքերի հաշվին փակելու գործելակերպի առջև: Ընդ որում կարևոր է այն բանի գիտակցումը, որ ամեն մի խախտում կամ քիչ առաջ շարադրված հիմնարար սկըզբունքներից ամեն մի շեղում, ամեն մի ինքնակամ, վարչարարական լուծում կխեղաթյուրեն աշխատանքի տնտեսական մեթոդները, տնտհաշվարկի, սոցիալական արդարության սկզբունքները:

Սոցիալիզմի բաշխման հարաբերությունների մյուս ձևն այն վճարումներն ու արտոնություններն են, որոնք բնակչությունն ստանում է սպառման հասարակական ֆոնդերից: Այդ ֆոնդերը մեծ դեր են խաղում սովետական մարդկանց պահանջմունքների բավարարման, անվճար կրթության, առողջապահության, սոցիալական ապահովության զարգացման, ցածր վարձատրվող քաղաքացիների, ընտանիքների, սոցիալական խմբերի նյութական վիճակը բարելավելու գործում: Այս առումով կարևոր նշանակություն ունեն անվճար ծառայությունների և դրամական վճարումների հետագա արագ աճը, սպառման հասարակական ֆոնդերի կառուցվածքի ու բաշխման կատարելագործումը:

Բաշխման հարաբերությունների վերակառուցումը, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը գլխավորապես կանխորոշված են սոցիալիստական հասարակարգի հարաճուն հնարավորություններով, արտադրողական ուժերի, հասարակական արտադրության զարգացման մակարդակով:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման հետագա արագացումը, սոցիալիզմին ներհատուկ դինամիզմը պայմանավորում են հասարակական, ամենից առաջ, տնտեսական հարաբերությունների նոր որակական տեղաշարժերը, խոր և կոմպլեքսային փոփոխությունները ինչպես աշխատանքի և արտադրության ոլորտում, այնպես էլ կյանքի նյութական ու հոգևոր պայմաններում՝ խթանելով սովետական մարդկանց քաղաքական և աշխատանքային աճող ակտիվությունը:

---

րորդ, աշխատողի անձնական շահի իրացումն անիմաստ է՝ առանց ամբողջությամբ վերցրած արտադրական կոլեկտիվների նյութական խթանման ֆոնդերի գոյացման և նրանց կողմից արտադրված արդյունքների իրական նշանակության միջև կախվածություն սահմանելու: Ահա, այստեղ էլ գծագրվում է գործող մեխանիզմի անընդունելի կողմը, քանի որ հենց ձեռնարկությունների մակարդակում է դրսևորվում տնտեսավարման կենտրոնացված և ապակենտրոնացված մեթոդների հակասականությունը: Տնտեսական կենտրոնը, բնականաբար, ձգտում է մինչև ձեռնարկությունների մակարդակը հասցնել անհրաժեշտ քանակությամբ առաջադրանքներ ու ցուցանիշներ (արտադրական պլան): Ընդ որում նրա շահերը պահանջում են, որ յուրաքանչյուր օղակ առաջադրանքը կատարի համապատասխան ժամկետներին, պահանջվող ծավալով և գործունեության արդյունքները փոխանցի ժողովրդական տնտեսության մյուս օղակներին: Այսպիսի իրադրությունում, երբ բոլոր օղակների աշխատանքը խստորեն կանոնակարգված է և փոխշաղկապված, տնտեսական կենտրոնը չի կարող ոչ նպատակահարմար ճանաչել դրանցից որևէ մեկի գործունեությունը: Վաղ թե ուշ ձեռնարկությունները ստիպված են լինում հիմնականում խթանման միատեսակ մակարդակ ապահովել, քանի որ էկոնոմիկայում հաշվեկշռայնության պահպանումը պահանջում է միջոցների մշտապես տեղափոխում լավ աշխատող կազմակերպություններից դեպի վատ աշխատողները:

Այդ պահից սկսած անձնական և անգամ հասարակական շահերի իրացումն արդեն չի կարող համարվել տնտեսական մեխանիզմի կոնստրուկտիվ տարր: Պլանի կատարումը դառնում է ինքնանպատակ: Ստացվում է արտադրություն՝ հանուն արտադրության: «Իր հակադրությունից՝ ինքնուրույնությունից դուրս վերցրած կենտրոնացումը չի ապահովում իսկական պլանաչափություն և անգամ տանում է դեպի ֆորմալիզմ ու բյուրոկրատիզմ» (С. Дзарасов, Политическая экономия и хозяйственная практика, «Экономические науки», 1983, № 10, с. 9): Լավագույն դեպքում ստեղծվում է հնարավորությունների և սահմանների առումով աննշան ձեռնարկությունների օգուտների վերաբաշխման մեխանիզմ (նյութական խրախուսման ֆոնդեր), որը թույլ է տալիս պահպանել աշխատողի թեկուզ ինչ-որ ակտիվություն: Բնորոշ է, որ նշված հինգ արտադրամիավորումներում աշխատանքի արտադրողականության միջև տարբերությունը հասնում է մինչև 2 անգամի, իսկ միջին ամսական աշխատավարձում, հաշվի առնելով նյութական խրախուսման ֆոնդից վճարումները՝ 8—10 տոկոս: Բայց չէ՞ որ ձեռնարկությունների մակարդակով, եթե պահպանվի աշխատողի ակտիվության պահանջը, համենայն դեպս, պետք է այնպիսի համակարգ, որը թույլ տա կոլեկտիվներին և աշխատողներին՝ վաստակելու իրենց տնօրինությանը թողնված միջոցները: Տվյալ դեպքում կենտրոնացված միջոցները պետք է ուղղվեն ժողովրդական տնտեսության հետ մնացող օղակների զարգացմանն օգնելուն: Այսպիսով, անձնական և կոլեկտիվ շահերի իրացման առումով պետք է ապակենտրոնացված տնտեսավարման համակարգ՝ կենտրոնացման տարրերով, այլ ոչ թե ընդհակառակը:

Գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում անձնական ու կոլեկտիվ խթանների իրացման որոշ առանձնահատկություններ ժխտում են կենտրոնացված կառավարման արդեն իսկ գերաճած համակարգի արդյունավետ գործունեության նույնիսկ տեսական հնարավորությունը: Նախ, հասարակության մեջ, որպես հիմնական ստեղծագործ ուժ, հանդես է գալիս աշխատանքի նկատմամբ մշտական ստեղծագործական վերաբերմունք պահանջող գիտական, ինժեներական միտքը: Եվ այդպիսի աշխատանքի արդյունքները և ինքը՝ աշխատանքը, ենթակա չեն ստույգ հաշվառման «աշխատանքային ժամանակ» չափանիշի միջոցով: Երկրորդ, արտադրության գիտականացման (և ոչ թե գիտության նյութականացման) կապակցությամբ աշխատանքում սկսում են գերակշռել ստեղծագործական ֆունկցիաները, իսկ արժեքի օրենքը ենթարկվում է լուրջ փոփոխությունների: Չէ որ «... մտավոր աշխատանքի արդյունքի նախնական ստացման համար անհրաժեշտ աշխատաժամանակը, եթե նույնիսկ այն կարելի լիներ չափել, ոչ մի կերպ չի կարող համեմատվել այն աշխատանքային ժամանակի հետ, որն անհրաժեշտ է մեծ մասշտաբներով նրա վերարտադրության համար» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 26, ч. I, с. 355): Ստեղծագործական աշխատանքի արդյունքի արժեքի մեծությունը չի չափվում միայն նրա արտադրության ծախսերով: Նյութական արտադրության արդյունքի արժեքային նշանակությունը կազմավորվում է որպես արտադրության վրա կատարված ծախսերի գումար: Այս մոտեցումը կտրականապես անընդունելի է գիտատեխ-



նիկական աշխատանքի արդյունքների նկատմամբ: Այդպիսի աշխատանքի արդյունքները կենտրոնացված կարգով կառավարելու համար անհրաժեշտ է ոչ միայն արդյունքի, այլև աշխատանքի պրոցեսի նախապես տրված չափանիշների և պարամետրերի ամբողջություն( Փաստորեն դա նշանակում է վերևից կառավարել գիտատեխնիկական մտքի ծագումն ու իրացումը, որը յուրաքանչյուր առանձին դեպքում ոչ միայն նպատակահարմար չէ, այլև անհնարին է: Երրորդ, արդի պայմաններում արմատապես վերափոխվում է հարաբերակցությունը սպառողական արժեքի և արժեքի միջև: Գիտատեխնիկական աշխատանքի արդյունքի սպառողական արժեքը կայանում է ոչ միայն և ոչ այնքան ընթացիկ պահանջմունքների բավարարման մեջ, այլև անհրաժեշտ այն պայմանների ստեղծման մեջ, որոնք պոտենցիալ հիմք են հանդիսանում պահանջմունքների որակական թռիչքի համար:

Հետևաբար, սպառողական արժեքի և արժեքի միջև հարաբերակցությունը դառնում է էլ ավելի հակասական, իսկ նրանց կենտրոնացված կառավարումը՝ դժվարին: Տնտեսական կենտրոնը, որպես կանոն, պետք է կառավարի ձեռնարկությունների գործունեությունը գոնե արժեքային ցուցանիշներով, քանի որ արժեքի մեծությունը կախված չի նրա դրսևորման մակարդակից, ինչը չես ասի սպառողական արժեքի մասին, քանի որ ժողովրդական տնտեսության արտադրանքի ծավալուն անվանացանկը կազմում է 24 միլիոն անվանում (В. М. Иванченко, Развивать функции основного звена, «Экономическая газета», 1986, № 32, с. 8): Եվ դա այն դեպքում, երբ տնտեսական կենտրոնը ի վիճակի է կազմելու ծավալուն պլան միայն 5—10 հազար անվանումների համար (А. Бузгалин, Централизм в плановом хозяйстве: границы и негоды, «Плановое хозяйство», 1985, № 9, с. 70): Գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում արտադրության ավանդական արժեքային կառավարումը նույնպես կորցնում է օբյեկտիվ հիմքը, քանի որ արտադրության ծախսերի կառավարումն ամենևին նույնական չէ արդյունքների կառավարման հետ: Ուստի դժվարանում է արտադրության պլանավորումն անգամ ծավալային ցուցանիշներով: Այսպես, հայտնի է նոր տեխնիկայի համար գների սահմանման պրոբլեմը: Մինչև վերջերս, հաշվարկվելով որպես արտադրության միջին ծախսեր, դրանք բացասաբար էին անդրադառնում արտադրողների տնտեսական աճի տեմպերի վրա: Վերջին տարիներին իրականացվեց կտրուկ շրջադարձ նոր տեխնիկայի գնագոյացման ասպարեզում: Գնի մեջ սկսեցին հաշվի առնվել ոչ միայն ծախսերը, այլև տնտեսական արդյունքը, նորմատիվային շահույթը: Այժմ արդեն բարձր գնի պատճառով ծանր կացության մեջ ընկան նոր տեխնիկայի սպառողները, որի հետևանքով ծագեցին լրացուցիչ պրոբլեմներ նորույթների արմատավորման և մասսայական տարածման բնագավառում: Մյուս կողմից, գնագոյացման համակարգի խիստ կենտրոնացման պայմաններում չի հաջողվում սահմանել իրական տնտեսական արդյունքը, որը միայն վկայում է այդ համակարգի թերությունների մասին: Վերջին տարիների գնագոյացման պրակտիկան ակներևաբար ցույց է տվել, որ «գինը արժեքի դրամական արտահայտությունն է» բանաձևը չի կարելի ընկալել տառացիորեն և դրանով կառուցել գնագոյացման աստիճանակարգ: Մինչև որ արժեքը ստանում է ճանաչման քանակական չափ՝ գնի ձևով, նա սպառողի կողմից համաչափելիության է բերվում սպառողական արժեքի հետ: Գնագոյացման ներկայիս աստիճանակարգը թուլացնում է նաև պլանավորման համակարգը, քանի որ ոչ մի արժեքածավալային ցուցանիշ նման պայմաններում չի գործում, օժտված չէ անհրաժեշտ վստահությամբ:

Այսպիսով, աշխատողի անձնական շահի իրացումը պետք է լինի համակարգակազմիչ՝ ձեռնարկության տնտհաշվարկի մոդելի համար, քանի որ «գիտատեխնիկական առաջադիմության համար պետք են... ակտիվություն, ինքնուրույնություն, ստեղծագործություն...» (Г. Х. Попов, Управление экономикой — экономические методы, М., 1985, с. 19): Ձեռնարկության տնտհաշվարկային մոդելի վրա գիտատեխնիկական առաջադիմության ներգործությունը երկակի է: Ընդհանուր առմամբ, ուժեղացնելով ձեռնարկությունների ինքնուրույնության ընդլայնման անհրաժեշտությունը, գիտատեխնիկական առաջադիմությունը ծնում է նաև հակառակ միտում: Բանն այն է, որ դինամիկ գիտատեխնիկական զարգացումը ենթադրում է անհրաժեշտ կուտակման առկայություն, ռիսկի տարրեր: Տվյալ ժամանակաշրջանում գիտության և տեխնիկայի պոտենցիալ հնարավորությունները մշտապես գերազանցում են նյութական պրակտիկայի հնարավորությունները: Ավելին, չի կարելի գիտության նկատմամբ արդյունքների ռոպեական նյութականացման պա-

հանջ առաջադրել: Իհարկե, արտադրության պահանջմունքներն իրենց հերթին կանխորոշում են գիտության ու տեխնիկայի զարգացման ուղիները: Սակայն գիտությունն ամբողջությամբ ինքն է մեծ չափով հող նախապատրաստում այդ պահանջմունքների առաջացման համար: Նրա զարգացումը միշտ պետք է առաջ անցնի արտադրության զարգացումից:

Արտադրության գոյություն ունեցող նյութատեխնիկական բազան բացառող նորագույն գիտատեխնիկական նվաճումը, որպես կանոն, հանդիպում է արտադրողների պահպանողական հակազդեցությանը: Ուստի, հեռանկարային տեխնիկական քաղաքականությունը պետք է վերապահել կառավարման կենտրոնացված մարմիններին: Այս դեպքում հորիզոնական տնտհաշվարկային հարաբերությունները, որոնք ենթադրում են սպառողի կողմից նրա պահանջմունքների բավարարման մակարդակին համապատասխան արդյունքների անմիջական գնահատում, չեն կարող կիրառվել: Դա նշանակում է, որ համապատասխանաբար այդպիսի աշխատանքներ կատարող օղակների՝ ներկայումս գործող փաստորեն անհատույց ֆինանսավորման ու խթանման համակարգի փոխարեն հարկ է անցնել պետական պատվերների համակարգի և ֆինանսավորման ու խթանման ծավալները իրապես շաղկապել պատվիրված արդյունքի պարամետրերի և չափանիշների փաստացի կատարման հետ:

Այսպիսով, աշխատողի անձնական շահը լրիվ իրացնող՝ ձեռնարկությունների տնտհաշվարկի մոդելի դեպքում, կենտրոնացված կառավարումը պետք է սահմանափակված լինի ռեսուրսների (այդ թվում՝ աշխատանքային) բաշխման և հեռանկարային գիտատեխնիկական առաջադիմության ծրագրերի իրացման շրջանակներում: Կնշանակի, նպատակահարմար է կենտրոնացված պլանավորման որոշիչ դերը պահպանել միայն արդյունահանող արդյունաբերության, ինչպես նաև արտադրության միջոցների և այդպիսի միջոցների արտադրության ճյուղերում: Այս ճյուղերի համար գների և նյութական խթանման միջոցների հիմնական մասի (աշխատավարձը, պարգևը) կարգավորումը նպատակահարմար է վերապահել տնտեսական կենտրոնին: Վերամշակող արդյունաբերության ճյուղերում կենտրոնացված պլանները հարկ է սահմանափակել հիմնականում հեռանկարային գիտատեխնիկական զարգացման շրջանակներում: Այստեղ արդեն տնտեսական կենտրոնի կողմից գները կարող են միայն լիմիտավորվել (հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների միջև համամասնությունների պահպանման նպատակով): Այս կազմակերպությունների աշխատավարձի ֆոնդը կարելի կլինի գոյացնել հավելանորմատիվային մեթոդով: Կենտրոնացված կարգով նյութական խթանման ֆոնդերի միջոցների օգտագործման հարցում հարկավոր է կարգավորել տարբեր կատեգորիաների աշխատողների աշխատանքի վարձատրության հարաբերակցությունը: Վերջնական արտադրանքի մշակման ճյուղերում և՛ պլանները, և՛ գները պետք է սահմանվեն իրենց՝ ձեռնարկությունների կողմից: Ընդ որում աշխատանքի վարձատրության ֆոնդերը կազմավորվում են մնացորդային մեթոդով, իսկ կենտրոնի հետ փոխհարաբերությունները սահմանափակվում են պարտադիր վճարներով:

Եվ այսպես, ընդհանուր համակարգային հատկանիշի զատումը և պահպանումը թույլ են տալիս դրսևորելու կոմպլեքսային մոտեցում տնտհաշվարկի ցանկալի մոդելի մշակման հարցում: Այդպիսի համակարգի շրջանակներում արդեն կարելի է հիմնավորված պատասխանել հետևյալ հարցին. պե՞տք է, արդյոք, աշխատանքային ռեսուրսների օգտագործման համար վճար մտցնել: Ակնհայտ է, որ արդյունահանող արդյունաբերության ճյուղերում այդպիսի անհրաժեշտություն չկա: «Միջին» մշակման ճյուղերում վճարումը կարելի է իրականացնել սոցիալական ապահովության մասհանումների բարձրացման միջոցով: «Վերջնական» մշակման ճյուղերում պետք է լինեն և՛ աշխատանքային ռեսուրսների օգտագործման համար վճարներ, և՛ սոցիալական ապահովության մասհանումներ:

Իհարկե, ըստ ընտրած գեներացնող ընդհանուր համակարգային հատկանիշի, կարող են մշակվել ձեռնարկությունների տնտհաշվարկի զանազան մոդելներ: Ներկայացվող մոդելում մենք կանգ առանք անձնական շահերի իրացման վրա, հաշվի առնելով այն, որ սոցիալիստական տնտեսավարման արդյունավետության օբյեկտիվ գործոնը «յուրաքանչյուր խոշոր ձեռնարկության ինքնուրույնության և ձեռներեցության ընդլայնում» է (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 43, էջ 404), քանի որ «սոցիալիզմը չի ստեղծվում վերևից տրված ցուցումներով: Նրա ոգուն խորթ է կազյոննի-բյուրոկրատական ավտոմատիզմը. կենդանի, ստեղծարար սոցիալիզմը հենց ժողովրդական մասսաների ստեղծագործությունն է» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 35, էջ 61):



# ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԱԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՆ

**Ա. ԹՈՐՈՍՅԱՆ**

**ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ** զարգացման արագացման կուրսը առաջադրում է ինտենսիվացման, կառավարման որակական կատարելագործման, արտադրության և աշխատանքի կազմակերպման, նյութական, ֆինանսական ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հիման վրա արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրները: Տնտեսական գործունեության արդյունավետության բարձրացումն անխզելիորեն առնչվում է սոցիալական գործոնների՝ ժողովրդական զանգվածների կազմակերպվածության, կարգապահության, ստեղծագործական ակտիվության օպտիմալացման, առաջին պլան է մղում մարդկային գործոնը:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացումն ավելի բարձր պահանջներ է առաջադրում աշխատավորների ընդհանուր և պրոֆեսիոնալ կրթությանը, նշված է ՍՄԿԿ ծրագրում: Գիտատեխնիկական առաջադիմությունը չի կարելի պատկերացնել առանց անմիջականորեն նյութական բարիքներ արտադրողների՝ բանվորական կադրերի ընդհանուր ու տեխնիկական պատրաստվածության բարձրացման, նրանց կողմից մի քանի մասնագիտության տիրապետման և աշխատանքային գործողություններ կատարելիս բարձր պրոֆեսիոնալիզմի ձեռքբերման:

Ոչ պակաս նշանակություն են ստանում աշխատավորի սոցիալական ակտիվությունը, հասարակական ու տնտեսական գործունեության մեջ նրա ներգրավվածության աստիճանը, որով պայմանավորված են նրա գիտակցականության մակարդակը, իդեալների, սկզբունքների ու նպատակների ըմբռնումը, դրանց զուգակցումն անձնական շահերին:

Վ. Ի. Լենինն ընդգծում էր էկոնոմիկայի և պրոպագանդայի փոխադարձ կապը՝ նշելով, որ գաղափարախոսական աշխատանքի ուղղվածության բնույթը գործնական խնդիրների կատարման վրա ժողովրդական զանգվածների մեջ ամենաէական հետաքրքրություն կհարուցի տնտեսական կարիքների նկատմամբ, որը, իր հերթին, կուժեղացնի բանվորների կրթության ու կուլտուրայի պահանջը (տե՛ս ԵԼԺ, հ. 40, էջ 192—198):

Էկոնոմիկայի և գաղափարադաստիարակչական գործունեության կապն առավել ցայտունորեն է դրսևորվում արտադրության ու աշխատանքի կազմակերպման խնդիրների լուծման գործում: Աշխատավորների մեջ իսկական տնտեսատիրոջ զգացում և աշխատանքի արդյունքների համար բարձր պատասխանատվություն դաստիարակելն այսօր կարևորագույն խնդիր է դառնում, քանի որ, ինչպես նշել են Մարքսը և Էնգելսը, մարդն ինքը իր նյութական արտադրության հիմքն է: «Լույս» արտադրական միավորումում ադմինիստրացիան և կուսակցական կազմակերպությունը սևեռուն ուշադրություն են դարձնում բանվորների կուլտուր-տեխնիկական աճի բարդ ու բազմակողմանի խնդրի վրա: Աշխատողների հանրակրթական և կուլտուրական մակարդակի անընդմեջ բարձրացման հարցերն արտացոլված են աշխատանքային կոլեկտիվի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանում, որով նախատեսվում են երեկոյան դպրոցների սովորողների թվի ավելացում, կադրերի տեխնիկական պատրաստ-

# ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՆ ԱՍՏԻՃԱՆԸ

ԱՍՈՒՄ ԵՆ՝ ԱՆՓՈԽԱՐԻՆԵԼԻ ՄԱՐԴԻԿ չկան: Երևի դա այդպես է: Հենց ժառանգորդության շնորհիվ է, որ չի ընդհատվում բարի գործերի ու արարքների շղթան: Եվ, չնայած դրան, կան անհատներ, որոնց հնարավոր չէ բաժանել իր կատարած գործերից: Դրանով էլ հենց հետաքրքիր են նրանք: Փորձիր կտրել նրան այդ գործից՝ կտուժի և՛ գործը, և՛ ինքը՝ մարդը:

Ի՞նչն է գլխավորը մարդու բնավորության մեջ: Կան մարդիկ, որոնց հոգին լայնորեն բացված է կյանքի առաջ. նրանք շռայլորեն ընկալում են բարության դասերը, ակտիվորեն ձգտում են կյանքի ամենօրյա ընթացքում գտնել ստեղծագործական հրապուրվածություն, բարձր նպատակների ու մասշտաբային խնդիրների վարակիչ օրինակներ: Բայց հոգեկան շռայլությանը պարտադիր կերպով անհրաժեշտ է հետադարձ կապը. ակտիվորեն ընկալելով՝ այն պետք է նույնքան ակտիվորեն հատուցի:

Երեսունհինգ տարի առաջ պոլիտեխնիկական ինստիտուտի երիտասարդ շրջանավարտը ոտք դրեց Երևանի էլեկտրալամպերի գործարանի շեմին: Եվ այդ օրվանից սկսվեց նրա աշխատանքային կենսագրությունը՝ կապված տվյալ ձեռնարկության հետ: Նա գործարան եկավ որպես կազմակերպված մարդ և դրանում, առաջին հերթին, մեծ դեր խաղացին ռազմաճակատային տարիները: Քառասուներեքին նա զորակոչվեց գործող բանակ, Հաղթանակը դիմավորեց հոսպիտալում: Հենց այդ տարիներին էլ նա գիտակցեց պատասխանատվության աստիճանը, որը մարդը պետք է պահպանի ամբողջ կյանքում, պատասխանատվություն հայրենիքի, ընկերների և, իհարկե, իր իսկ առջև:

Սկսել է վարպետից, եղել է արտադրամասի պետի տեղակալ, գլխավորել է արտադրամասային կոլեկտիվներ, ղեկավարել է գործարանի կոնստրուկտորական բյուրոն, եղել է գլխավոր ինժեների տեղակալ, այնուհետև՝ գլխավոր ինժեներ: Վերջին տասներկու տարիներին «Լույս» արտադրական միավորման գլխավոր դիրեկտորն է: Եվ միշտ Բենիամին Հակոբի Թումասյանի համար պատասխանատվության զգացումը մնացել է անանցողիկ: Այսօր նա պատասխանատու է ավելի քան տասներկուհազարանոց կոլեկտիվի համար, միավորման մակնիշի պատվի համար:

Ամբողջ երկիրը և արտասահմանյան տասնյակ պետություններ՝ այսպիսին է «Լույս» արտադրական միավորման լուսային և լուսատեխնիկական իրերի լայն գամմայի աշխարհագրությունը: Ութ գործարան և երեք մասնաճյուղ՝ սա է նրա կառուցվածքը: Արտադրանքի օրեցօր աճող որակ: Հարյուրավոր մատակարարներ: Ես շրջում եմ միավորման գլխավորող՝ լամպերի գործարանի արտադրամասերով: Առաջին օրը չէ և առաջին անգամ չէ, որ շրջում, ծանոթանում եմ փոփոխություններին՝ զրուցելով մարդկանց հետ ոչ այնքան բազմաթիվ վերափոխումները լրիվ ընդգրկելու, որքան հասկանալու համար, թե ինչի՞ շնորհիվ են դրանք կատարվել և ի՞նչն է դրանց նպաստել: Եվ թե ինչպես է ստացվում, որ նման բարդ մեխանիզմը երկար տարիներ գործում է անխափան՝ ապահովելով պլանների կատարման կայունությունը: Չէ որ բազմաթիվ օբյեկտիվ պատճառներ և դժվարություններ չեն շրջանցում նաև լամպագործներին: Ընդ որում վերջին տարիների ընթացքում միավորումը տասն անգամ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշի:

Ամենևին էլ հեշտ չէ պատասխանել այդ հարցերին:

Անշուշտ, չի կարելի պնդել, թե ամեն ինչ կախված է միայն դիրեկտորից: Եվ, այնուամենայնիվ, կամերտոնը հնչեցնում է ղեկավարը, որի անհատականությունը շատ դեպքերում որոշում է կոլեկտիվի ջանքերի արդյունավետությունը, նրա բարոյահոգեբանական մթնոլորտը:

— Ինչպիսի՞ն պետք է լինի ժամանակակից ղեկավարը,— հարցրեցի Բենիամին Հակոբովիչին:

— Ե՛վ տնտեսագետ, և՛ մանկավարժ ու հոգեբան,— պատասխանեց նա,— մի խոսքով՝ բարձր կուլտուրայով, ոչ հիշաչար մարդ: Իմ ամբողջ կյանքն ու փորձը վկայում են, որ մարդիկ միշտ ձգտում են միայն լավ գործեր կատարել: Բոլորի մոտ չէ, որ դա ստացվում է: Հենց դրա համար էլ դու ղեկավար ես:

Կոլեկտիվում ոչ մեկի համար գաղտնիք չէ, որ միավորումում կատարվող գործերից շատերը ծնվում և կյանքի ուղեգիր են ստանում հենց դիրեկտորի աշխատասենյակում:

— Աշխատանքը պետք է կառուցել այնպես,— ասում է Բենիամին Հակոբովիչը,— որպեսզի մարդը ստանա և՛ բարոյական, և՛ նյութական բավարարվածություն: Թվերն ու ցուցանիշները, իհարկե, օրենք են յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի համար, բայց դրանք ժամանակավոր, անցողիկ հասկացություններ են: Մնում են գործարանը, աշխատանքի մարդը, նրա համար ստեղծվող պայմանները: Բանվորը պետք է տեսնի, որ հոգատարությունը նրա նկատմամբ ոչ թե կարճատև կամպանիա է, այլ մշտական քաղաքականություն: Իր իսկ օրինակով պետք է համոզվի՝ որքան լավ են գործերը կոլեկտիվում և որքան լավ է աշխատում յուրաքանչյուրը, այնքան շատ են հնարավորությունները աշխատանքի վարձատրությունն ավելացնելու, կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու համար: Մի խոսքով, մարդկային գործոնը դառնում է գլխավորը ժամանակակից շրջանում, և, առաջին հերթին, դրանից է կախված այն, թե որքանով հաջող կկենսագործվի կուսակցության ստրատեգիան՝ էկոնոմիկան ինտենսիվացման ռելսերի փոխադրելը:

Երևի ոչ մի տնտեսագետ չի համաձայնվի հաշվել սոցիալ-կուլտուրական և կենցաղային յուրաքանչյուր օբյեկտից ստացված անմիջական արդյունքը, և դա հնարավոր էլ չէ: Բայց ահա «Լույսում» ամբողջությամբ և մասնավորապես գլխավորող գործարանում պարզ և ցայտուն ձևով երևում է մարդու, նրա աշխատանքի և հանգստի պայմանների համար մշտական հոգատարության իրական արգասիքը: Յուրաքանչյուր աշխատող գիտի, որ ձեռնարկության կողմից իրեն տրամադրված բարիքները վաստակված են իր իսկ աշխատանքով:

Հաղթահարվել է գիտակցության հոգեբանական շեղումը, երբ բանվորն իր վաստակն էր համարում զուտ աշխատավարձը: Այժմ նա սովորել է ընտանեկան բյուջեին գումարել բոլոր այն ծառայություններն ու արտոնությունները, որոնք թեթևացնում են նրա ու նրա ընտանիքի հոգսը, և նա գիտի, որ այդ բարիքները վաստակել է ինքը:

Իմ գործարանն իմ տունն է: Այս բառերը ճշգրտորեն են արտահայտում «Լույսի» բանվորի վերաբերմունքն իր ձեռնարկության նկատմամբ: Խոսքը, իհարկե, նրանց մասին է, ովքեր իրենց կյանքը սերտորեն կապել են միավորման հետ, իսկ նրանք այստեղ կազմում են մեծամասնություն, եղանակ են ստեղծում և որոշում կոլեկտիվի բարոյական մթնոլորտը:

Հոգատարությունը մարդկանց նկատմամբ միավորումում զգացվում է ամենուր: Այսպիսի վերաբերմունքը նույնպես գալիս է ղեկավարությունից: Յուրաքանչյուր գործողություն ունի իր նպատակը՝ աշխատողը պետք է հասկանա, որ վերաբերմունքն իր նկատմամբ ցուցամոլություն չէ, այլ՝ չափանիշ:

Հիշարժան էր միութենական մինիստրության արտադրական կարողությունների զարգացման վարչության պետի ժամանումը Երևան: Լուծվում էր «Լույսին» արտադրության զարգացման համար միջոցների հատկացման հարցը: Զրույցի ամենաթեժ պահին Թումասյանն անսպասելիորեն ներողություն է խնդրում հյուրից և շտապում է... այցելուների ընդունելության: Ուշքի գալով՝ մոսկվացի հյուրը դիմեց ինձ. «Առաջին անգամ եմ այսպիսի դիրեկտորի հանդիպում: Հետաքրքիր է ինչպիսի՞ հարցեր է նա հիմա լուծելու, եկեք մենք էլ գնանք ընդունելությանը»:

Ընդունելությունն այդ օրն անցնում էր սովորականի պես: Մասնակցում էին իրավաբանը և արհկոմիտեի ներկայացուցիչը: Ուշադրությամբ լսվում էր յուրաքանչյուր հարց: Եվ զգացվում էր դիրեկտորի անկեղծ վերաբերմունքը յուրաքանչյուր այցելուի նկատմամբ: Մարդիկ գոհ էին դուրս գալիս նրա աշխատասենյակից: Հարցերը այսպես կամ այնպես լուծվում էին: Նույնիսկ խնդրանքի մերժումը այցելուի մեջ դժգոհություն չառաջացրեց՝ իրավաբանը սպառիչ բացատրություն տվեց դրա հիմնավորված չլինելու վերաբերյալ:

Ու կարծես թե չէր ընդհատվել զրույցը մոսկվացի հյուրի հետ: Իսկ վերջինս, հարցը դրականորեն լուծելով, ծածուկ ասաց ինձ. «Ես զգացի դիրեկտորի անկեղծ հոգատարությունն աշխատողների նկատմամբ, համոզված եմ միավորման զարգացման համար միջոցների հատկացման անհրաժեշտության մեջ»:

Եվ նորից կադրերի մասին: Էլեկտրալամպերի գործարանում յուրաքանչյուրը գիտի, որ հարվածային աշխատանքը, գործի նկատմամբ ստեղծագործական վե-

րաքերմունքն անպայման պետք է նշվի ու գնահատվի: Այստեղ հստակ կանոն կա՝ դրսից մասնագետներ չհրավիրել: Յուրաքանչյուր լավ աշխատող հնարավորություններ ունի ծառայողական ու ստեղծագործական աճի համար: Մարդիկ իրենց ապագան կապում են գործարանի հետ: Զարմանալի չէ, որ արտադրամասերի և մյուս ծառայությունների բոլոր պետերի աշխատանքային գրքույկներում միայն մի գրանցում կա՝ էլեկտրալամպերի գործարան: Դրա նպատակահարմարության մեջ դիրեկտորը համոզվել է սեփական օրինակով:

Այստեղ վաղուց արդեն ընդունված է առաջքաշման թեկնածությունները քննարկել կոլեկտիվ ձևով, իսկ կուսակցության Կենտկոմի հունվարյան պլենումից հետո այդ միտումն ավելի է խստացել: Ձեռնարկության բոլոր հարցերը լուծվում են համատեղ ուժերով:

— Միավորումում մի չափանիշ կա՝ վերաբերմունքը գործի նկատմամբ և պրոֆեսիոնալիզմը,— զրույցի ժամանակ նշեց արտադրամասերից մեկի պետը: Այստեղ շատերն են ձգտում, որպեսզի ձեռնարկության գործը դառնա նաև ընտանեկան գործ: Եվ բազմանում են աշխատանքային գերդաստանները: Թումասյանի զավակներն էլ իրենց աշխատանքային կենսագրությունը կապել են հոր գործի հետ: Որդին արդեն յոթ տարի է, ինչ աշխատում է արտադրամասում, իսկ դուստրը՝ կոնստրուկտորական բյուրոյում:

Մի անգամ մասնագետները հաշվել են, որ միավորումում աշխատողների ստացած վաստակով ապրում է 50 հազար մարդ: Իսկ դա նշանակում է, որ 50 հազար մարդ խորապես շահագրգռված է կոլեկտիվի ապագայի համար, իսկ նրա ղեկավարը պատասխանատվություն է կրում ոչ միայն աշխատողների, այլև նրանց ընտանիքների համար:

Այսօր միավորումը տեխնիկապես վերազինվում է: Գիտատեխնիկական առաջադիմությունն օգնում է զգալիորեն ավելացնել արտադրանքի ծավալները և որակը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը: Բայց նոր տեխնիկան, որն այստեղ նկատելիորեն ավելացել է վերջին տարիներին, պահանջում է նաև կտրուկ կերպով բարձրացնել պլանավորման, արտադրության կառավարման մակարդակը, գտնել աշխատանքի կազմակերպման առավել առաջադիմական ձևեր:

Առաջին պրոբլեմի լուծումը շատ բանով կապված է նյութատեխնիկական ապահովման, այսինքն՝ արտաքին գործոնների հետ: Երկրորդ պրոբլեմը զուտ ներքին գործ է: Եվ այստեղ մեծ դեր է խաղում ըստ վերջնական արդյունքների վարձատրության կոլեկտիվ ձևերի կիրառումը: Բրիգադների քանակի մեջ չէ էությունը, այլ այն բանում, որ աշխատանքի բրիգադային կազմակերպումը, հատկապես ժամանակակից արտադրության պայմաններում, դառնում է արդյունավետության բարձրացման կարևոր լծակ: Բրիգադներում, առաջին հերթին, տնտհաշվարկային բրիգադներում, բարձր է աշխատանքի արտադրողականությունը, մեծ նյութական ռեսուրսների տնտեսումը, ավելի ամուր է կարգապահությունը, նվազագույնի են հասցվում աշխատաժամանակի կորուստները: Խիստ կերպով աճել է յուրաքանչյուր բանվորի և ամբողջ բրիգադի նյութական ու բարոյական պատասխանատվությունը ռեսուրսների օգտագործման համար: Աճում է նախաձեռնությունն այդ ռեսուրսների դիմաց ավելի մեծ հատույց ստանալու հարցում: Բրիգադը կապում է յուրաքանչյուրի շահը միասնական կոլեկտիվ շահին:

— Մենք համոզված ենք,— շարունակում է Թումասյանը,— որ բրիգադային տնտհաշվարկը, այլ բառերով ասած՝ ռուբլին, բազմապատկած նախաձեռնությանը և պատասխանատվությանը, կօգնի հաջողությամբ յուրացնել նոր բարձրարդյունավետ սարքավորումները և ռեալ հիմքերի վրա դնել աշխատանքային ու նյութական ռեսուրսների տնտեսման համար ծավալված պայքարը:

Բրիգադների կազմավորումը կապված է կայունացած հայացքների, արմատացած ավանդույթների բեկման և, ի վերջո, անհատապես «իր համար» աշխատելու և միայն իր համար պատասխանելու սովորության հաղթահարման հետ:

Անշուշտ, բրիգադային մեթոդի ժամանակ էլ մարդու աշխատանքը բնորոշող հիմնական ցուցանիշը նրա անձնական ավանդն է, արտադրողական աշխատանքը: Բայց տվյալ դեպքում բրիգադային կապալի սոցիալ-հոգեբանական արդյունքը կայանում է հենց նրանում, որ այն բանվորի անհատական ունակությունները ենթարկում է ընդհանուր շահերին, միասնական բարոյական սկզբունքներին:

Մրցության մեջ նույնն է, երբ իշխում են անհատական ձևերը՝ յուրաքանչյուրն առաջին հերթին իր մասին է մտածում, ապա նոր՝ բրիգադի, տեղամասի, արտադրամասի մասին: Հիմա, երբ աշխատանքը բրիգադներում կազմակերպված է կոլեկտիվ սկզբունքներով, ամեն ինչ այլ կերպ է ընթանում՝ մեր հաջողությունը իմ հաջողությունն է, մենք գրավել ենք մրցանակային տեղ, դա իմ, բոլորիս նվաճումն է: Հենց այստեղ է աշխատանքի բրիգադային կազմակերպման դաստիարակչական կողմը:



Ռուբլին միշտ էլ ռուբլի է մնում: Սակայն հարցն այն է, թե ինչպե՞ս և ի՞նչ ճանապարհով է այն վաստակված: Օրինակ, լավ է աշխատում հավաքող բանվորը, լավ էլ վաստակում է: Սա արդեն ռուբլի է: Բայց բրիգադում, ուր նա հոգ է տանում, որ ընկերն էլ լավ աշխատի, օգնում է նրան խոսքով ու անձնական օրինակով, ինչպես դա անում է ընդհանուր նշանակության լուսավորիչ լամպերի հավաքման արտադրամասի բրիգադավար, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Պավել Քալաշյանը, վաստակված ռուբլին ուրիշ է՝ կոլեկտիվ:

Ակնարկի նյութերը պատրաստելիս ես առիթ ունեցա զրուցելու գործարանի շատ աշխատողների հետ: Բնավորության ի՞նչ գծեր են նրանք բնորոշ համարում դիրեկտորի համար: Լավատեղյակությունը արտադրության գործերի մասին, վաղվա խնդիրների պարզ պատկերացումը: Ինքը՝ դիրեկտորը, ղեկավարի համար կարևոր է համարում «ներկայության գործոնը», սակայն ոչ այն իմաստով, որ աշխատողը մշտապես զգա իր կողքին ղեկավարի արթուն աչքը, եթե նույնիսկ նա բացակայում է այդ պահին: Ո՛չ, նա միշտ պետք է լինի գործարանում, ընդ որում՝ անպայմանորեն հայտնվի տեղամասերում, հատկապես առավել թույլ օղակներում:

— Ես երբեք կոչ չեմ անում իմ կոլեգաներին՝ գիշեր ու ցերեկ անցկացնել արտադրամասերում,— ասում է Թումասյանը: Բայց համոզված եմ, որ ոչ մի զեկույց կամ դիսպետչերական ամփոփագիր չեն կարող փոխարինել սեփական տպավորությանը: Մարդիկ էլ իրենց ավելի լավ են զգում, երբ ղեկավարը միայն լուրերով չէ, որ գիտի իրենց գործերի ու կարիքների մասին: Մեզանում ժամանակի պակասը համարվում է ակտիվ գործունեության մասին վկայող փաստարկ: Ինչու՞ ղեկավար աշխատողներից շատերին ժամանակը չի բավարարում: Նրանց աշխատանքային օրը կազմվում է տարերայնորեն և կախված է պատահական հանգամանքներից: Ժամանակի զգալի մասը ծախսվում է ուրիշների պարտականությունների կատարման համար (գլխավորապես՝ ենթակաների): Մի խոսքով, աշխատանքի սխալ կազմակերպման համար չափազանց թանկ են վճարում:

«Մեզ մոտ ամենքն իր ճամպրուկն է տանում». այս գաղափարը հոլովվեց զրույցների ընթացքում: Գլխավոր ինժեները և ստորաբաժանումների ղեկավարները, մասնաշենքի պետը և ավագ վարպետները, ինժեներները և բանվորները, որպես կոլեկտիվի բարոյական և գործնական մթնոլորտի դրական գիծ, ընդգծում էին յուրաքանչյուրի հնարավորությունն ինքնուրույն լուծելու իրենց իրավասության մեջ մտնող այս կամ այն հարցը՝ չխուսափելով «դրսի» միջամտությունից: Եվ այս փոխադարձ վստահության մեջ է կոլեկտիվի հաջողության հիմնական գաղտնիքը:

Լիազորությունների բաշխում. սկզբունքը նոր չէ, սակայն ամեն մի ղեկավարի չի հաջողվում այն կիրառել: Ինչու՞: Որովհետև չարիքը սկզբունքների պակասության մեջ չէ: Սկզբունքները պետք է կարողանալ օգտագործել, իսկ դա դժվար արվեստ է, որը պահանջում է լրջախոհություն, փորձ, վճռականություն, չափի զգացողություն և այլ շատ հատկություններ: Հնարավոր չէ լիովին կրկնել երեկվա օրը, երաշխիք չկա, որ «վաղը» երկու կաթիլ ջրի նման կնմանվի «այսօրվան»:

Եվ եթե նկատի ունենանք, որ անկրկնելի են ոչ միայն հանգամանքները, այլև կատարողները, կարելի է հասկանալ, որ կառավարման գիտության թեկուզ հայտնի սկզբունքներից օգտվելը մեծ վարպետություն է պահանջում: Ինչպե՞ս է դա հաջողվում Թումասյանին: Այստեղ, երևի, պետք է սկսել տվյալ պաշտոնին հարմար թեկնածու ընտրելուց, ավելի ճիշտ՝ պաշտոնը մարդուն հարմարեցնելուց: Սա ևս դիրեկտորի սկզբունքներից է:

Սոցիոլոգները գտնում են, որ ղեկավարման երկու հիմնական մեթոդ գոյություն ունի՝ դեմոկրատական և ինքնիշխան: Բ. Թումասյանի կարծիքով, հետևել այս մեթոդներից միայն մեկին՝ գործնականորեն հնարավոր չէ: Իսկ ինքը, այնուամենայնիվ, կողմնակից է առաջինին, որը թույլ է տալիս յուրաքանչյուր աշխատողի, օղակի ղեկավարի՝ նախաձեռնություն ցուցաբերել: Բայց հարցեր կան, որոնց վերաբերյալ որոշում պետք է ընդունի անձամբ ձեռնարկության ղեկավարը, որը ավելի լավ գիտե, թե, օրինակ, տվյալ փուլում ո՞ր արտադրանքն է ավելի անհրաժեշտ ժողովրդական տնտեսությանը:

Արտադրամասերում, աշխատասենյակում, դիսպետչերական խորհրդակցությունների ժամանակ և հինգշաբաթվա ավանդական ընդունելության օրերին ենթակաների հետ դիրեկտորի բազմաթիվ խոսակցությունների ընթացքում աչքի է զարնում նրա՝ լսելու ընդունակությունը, ոչ ձևական, իսկապես շահագրգռված

ուշադրությունը մարդկանց նկատմամբ, ովքեր դիմել են իրեն և օգնության կարիք են զգում: Սրանում է Թումայանի բնավորության ևս մի գիծը՝ տակտի զգացումը: Ի դեպ, դա չի խանգարում նրան՝ լինել շատ խիստ, երբ խոսքը վերաբերում է սկզբունքային հարցերին: Հենց այստեղ է, որ մեղավորը զղջում է, որ գործը հասցրել է այդ կետին: Ճիշտ է, այստեղ էլ դիրեկտորն, իրեն հավատարիմ, խոսակցության վերջում նուրբ հումորով ցրում է լարվածությունը, և մարդիկ դուրս են գալիս նրա առանձնասենյակից առանց դժգոհության:

Կուսկոմիտեի քարտուղար և դիրեկտոր: Խոստովանենք, որ շատ ձեռնարկություններում նրանց փոխհարաբերությունները հաստատվում են տնտեսական ղեկավարի գերադասության ներքո: «Լույսում» դա հավասարների երկխոսություն է: Յուրաքանչյուրը պատասխան է տալիս իր կոնկրետ տեղամասի համար, բայց գործակցի կարծիքը միշտ հաշվի է առնվում: Արդեն երկար տարիներ Թումայան-Դաշյան երկյակը հատակորեն է ղեկավարում կոլեկտիվը: Եվ բնական է, ո՞վ ավելի լավ կբնութագրի դիրեկտորին, եթե ոչ՝ կոմիսարը. հետևողական է գործողությունների մեջ, միշտ նպատակամղված դեպի նորը, վստահում է շրջապատին, գնահատում բարեխիղճ աշխատողներին, պաշտպանում և խրախուսում է ամեն մի նախաձեռնություն: Եվ որ գլխավորն է՝ սիրում է մարդկանց: Բնութագիրը կարճ է, բայց տարողունակ:

Մարդը և արտադրությունը: Կան հիանալի աշխատողներ, որոնք չեն պատկերացնում իրենց՝ առանց սիրելի աշխատանքի և նվիրվում են դրան ամբողջությամբ: Նրանք երբեք ժամանակի ավելցուկ չեն ունենում, նրանք չեն էլ ուզում այլ կերպ ապրել: Բենիամին Թումայանը հենց դրանցից է: Բայց որտեղի՞ց է նա ժամանակ գտնում բազմաթիվ հասարակական պարտականությունների կատարման համար: Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի անդամ, հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի կոլեգիայի անդամ, միավորման կուսկոմիտեի անդամ, Երքաղսովետի դեպուտատ, «Սվետոտեխնիկա» միութենական և «Հայաստանի արդյունաբերություն» ամսագրերի խմբագրական կոլեգիաների անդամ:

— Երբեմն ուզում եմ, որ օրը 24 ժամից ավելի լինի,— ժպտալով ասում է Թումայանը,— ժամանակը հազիվ է բավարարում: Բայց ես գտնում եմ, որ խոշոր ձեռնարկության ղեկավարի վրա դրված են ոչ միայն պատասխանատվություն արտադրության համար, այլև հասարակական բազմազան պարտականություններ:

Եվ նորից խոսք է բացվում պատասխանատվության մասին: Թերևս դա է հենց նրա բնավորության գլխավոր գիծը: Գուցե հենց դա է պատճառը, որ նա ընտրվել է Հայաստանի կոմկուսի վերջին երեք համագումարների, ՍՄԿԿ XXVI և XXVII համագումարների պատգամավոր, արժանացել սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման, պարգևատրվել Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի երկու շքանշաններով և բազմաթիվ մեդալներով:

«Լույսում» արդեն ընտելացել են գլխավորի անհանգիստ բնավորությանը: Ինքն էլ այլ կերպ չի կարող: Ինչպես չկիսվել գործընկերների հետ, չբացատրել այն փիլիսոփայի խնդիրները, որոնք դրված են երկրի էկոնոմիկայի առջև: Այսօր «Լույսի» մակնիշի հանդեպ դժգոհություն չկա: Բայց չէ՞ որ կարելի է ավելի որակյալ արտադրանք տալ: Տասներկուերորդ հնգամյակը նա որակում է որպես ինտենսիվ աշխատանքի և բարձրագույն արդյունավետության հնգամյակ: Եվ այստեղ երկրորդական հարցեր չկան: Միավորումում նախատեսված է արտադրանքի աճ՝ 51 մլն ռուբլի ծավալով: Եվ դիրեկտորների խորհրդում քննարկվում է ռեզերվների առավելաչափ օգտագործման հնարավորությունների հարցը:

Առայժմ ամեն ինչ չէ, որ հարթ է: Հաճախ տխրահռչակ գերատեսչական «մըկրատը» խեղում է նախաձեռնությունը և ստեղծագործ միտքը: Եվ նորից անհանգիստ մարդը ստիպված պայքարում է անգամ ամենահասարակ բաների համար: Եվ դա բնական է: Ասենք, միավորումում մշակվել են նոր, էներգախնայող լյումինեսցենտային լամպեր, որոնք սպառում են 10 տոկոս պակաս էներգիա: Պետպլանը պլանավորում է դրանց թողարկումը, իսկ ՍՍՀՄ քիմիական արդյունաբերության մինիստրության համար պլանավորված չէ այդ լամպերի համար անհրաժեշտ նյութերի արտադրությունը: Եվ ինչքան ջանք է վատնվում անվիճելին ձեռք բերելու համար:

— Արդեն առաջին տարին չէ, որ ես ղեկավարում եմ խոշոր ձեռնարկություն, բայց ոչ մի կերպ չեմ ընտելանում այն բազմաթիվ թերություններին, անօրինականություններին, որոնք խանգարում են մեզ նորմալ աշխատելու,— գանգատվում է գլխավոր դիրեկտորը,— կուսակցության Կենտկոմի հունիսյան պլենումում



հատուկ նշվեց ձեռնարկությունների իրավունքներն ըստ ամենայնի ընդլայնելու անհրաժեշտությունը: Միաժամանակ անհրաժեշտ է բարձրացնել յուրաքանչյուրի պատասխանատվությունն աշխատանքի կոնկրետ տեղամասի համար, բայց մենք դեռ շատ դանդաղ ենք վերակառուցվում: Այսպես շարունակել չի կարելի՝ սա է պահանջում կուսակցությունը:

Յուրաքանչյուր լուրջ ձեռնարկում, արտադրության կայունությունը և նրա աճի ապահովումը պահանջում են միջոցառումների լայն, կոմպլեքս ծրագիր, որոնցից մի քանիսն առաջին հայացքից ուղղակի կապ չունեն կոնկրետ խնդիրների լուծման հետ: Իսկ ինչ վերաբերում է արտադրանքի որակին, ապա դրա մակարդակը կախված է բազմաթիվ բաղադրամասերից: Այստեղ կարևոր դեր են խաղում և՛ տեխնիկական հագեցվածությունը, և՛ գաղափարադաստիարակչական աշխատանքը, և՛ հոգատարությունը սոցիալ-կուլտուրական պայմանների համար... Ճիշտ է ասված՝ որակը ամբողջ կոլեկտիվի աշխատանքի հայելին է:

Ձեռնարկության բազմապլան գործունեությունը մտցնել միասնական հունի մեջ և մարդկանց ուժերն ուղղել վերջնական բարձր արդյունքների ձեռքբերմանը, ժամանակին գտնել ու արմատախիլ անել անցանկալի միտումները՝ դրանում են տեսնում իրենց գլխավոր նպատակը միավորման ադմինիստրացիան և կուսկազմակերպությունը:

Գլխավորող գործարանում հաստատվել է կադրերի պատրաստման և դաստիարակման պարզորոշ համակարգ: Սկզբունքը մեկն է՝ ինքդ աճել ես, դաստիարակիր ուրիշին: Երիտասարդ, ընդունակ ինժեներները ծառայողական աստիճանով բարձրանալու ռեալ հնարավորություններ ունեն: Իսկ ծառայությունների հաշիվը գնում է ոչ թե աշխատած տարիների, այլ կոնկրետ գործերի համար: Փաստորեն ստորաբաժանման ոչ մի ղեկավար դրսից չի հրավիրվում:

Աշխատողի ձիրքերի ու գիտելիքների ճիշտ գնահատման ունակությունը մարդկային գործոնի ակտիվացման հետ կապված գլխավոր պահանջներից է: Կադրերի հետ աշխատանքում ադմինիստրացիան մշտապես հենվում է կուսկազմակերպության օգնության և օժանդակության վրա: Առանց կուսկոմիտեի գիտության՝ չի կատարվում ոչ մի նշանակում պաշտոններում: Սա, անկասկած, աշխատանքի ճիշտ ոճ է, քանի որ ցանկացած աստիճանի ղեկավար պետք է լինի նաև տվյալ կոլեկտիվի քաղաքական լիդերը:

Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում արտադրամիավորման կոլեկտիվի պայքարը որակի համար արժանացավ բարձր գնահատականի: Իսկ առջևում պետական որականիշով արտադրանքի ավելացման նոր խնդիրներ են: Դրա ձեռքբերման ուղիները հստակորեն մշակված են տասներկուերորդ հնգամյակի հատուկ ծրագրում: Ծրագրի անվանումը կարճ է և համապարփակ՝ «որակ»:

Վերադառնալով արդեն ասվածին՝ ուզում եմ կրկնել. միավորումում կիրառվող աշխատանքի ձևերը քիչ են տարբերվում արդյունաբերական մյուս ձեռնարկություններում ընդունված ձևերից: Տարբերությունն աշխատանքի նկատմամբ մոտեցման մեջ է: Այսօր երկրում շատ բան է արվում, որպեսզի տնտեսական մեխանիզմը գործի ավելի հստակ, ներդաշնակ: Այս միջոցները, իհարկե, կտան իրենց արդյունքները: Բայց կարելի՞ է, արդյոք, ձեռքերը ծալած նստել և սպասել, թե ո՞վ քո փոխարեն կլուծի կենսական պրոբլեմները: «Լույսը» նույնքան սուր է զգում այն թերությունները, որոնք խանգարում են և ուրիշներին: Ուստի կոլեկտիվը մոբիլիզացնում է իր ներքին ռեսուրսները, որ հասնի բարձր վերջնական արդյունքների: Դրանում է, թերևս, ամենաարժեքավորը այն միավորման փորձի մեջ, որը տոն է տալիս արտադրանքի որակի բարձրացման համար համաժողովրդական պայքարում:

... Խոսակցությունը դիսպետչերականի ժամին հստակ էր ու գործնական: Քննարկվում էր որակի հարցը: Զեկույցներ, առաջարկություններ: Թումայանը թեթևակի թխկացնում է սեղանին, բոլորը լռում են:

— Արձանագրե՛ք...

Որոշումներ, հանձնարարություններ, ժամկետներ:

Խոսում են կոնկրետ, հատու: Զգացվում է, որ գլխավոր դիրեկտորի մեջ մարդիկ տեսնում են ոչ միայն հեղինակավոր ղեկավարի և փորձառու մասնագետի, այլև մարդու, որը գիտի իր խոսքի արժեքը և նույնիսկ չի էլ կարող պատկերացնել, որ իր խորհուրդներից որևէ մեկը անուշադրության կմատնվի:

— Այո՛, խորհուրդները,— հետո կիսվում է ինձ հետ Բ. Թումայանը, ավելի լավ է չհրամայել, այլ հուշել, համոզել:

Միավորումում կանոնավոր կերպով, որպեսզի մարդիկ հետ չմնան ժամանակի պահանջներից, հրամկազմի համար անց են կացվում յուրատեսակ սեմինարներ: Գլխավոր դիրեկտորն իր ելույթներում կոնկրետ օրինակներով ցույց է տալիս,

թե ինչն է լավ և ինչը վատ՝ հատուկ ընդգծելով ղեկավարի ունակությունը՝ մատուցել իր որոշումը, ցուցումը, կարգադրությունը, որպեսզի դրանք ընկալվեն ենթակաների կողմից իբրև սեփական: Եվ գործը առաջ է գնում:

Կառավարել ձեռնարկությունը՝ նշանակում է, առաջին հերթին, կառավարել մարդու զարգացումը: Եվ ինչքան շուտ սկսենք, այնքան լավ: Սա է այն կարևոր դասը, որն առնում ես՝ լինելով գործարանում: Պատահական չէ, որ մասնագետները պնդում են, որ կառավարումն է շարժիչ ուժը, իսկ տնտեսական ու սոցիալական զարգացումը՝ դրա հետևանքն է: Այդ բանը հաստատեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը:

Դեռ այսօրվա ամսաթվով թղթեր է ստորագրում Թումասյանը, իսկ մտքերն արդեն ուղղված են վաղվան: Այս մրցավազքը շարունակվում է շուրջ տասը տարի: Եվ կոլեկտիվն ընտելացել է այն բանին, որ միայն ընթացքի մեջ է կյանքը:

Կուսակցությունը մշտապես հիշեցնում է հոգեբանական վերակառուցման անհրաժեշտությունը, յուրաքանչյուր աշխատողի մեջ նոր ձևով աշխատելու ցանկության և ունակության դաստիարակությունը: Խնդիրն այսօր աշխատավորների նախաձեռնությունը և ստեղծագործությունը զարգացնելն է, որը հենվում է ոչ միայն էնտուզիազմի, այլև սոցիալ-տնտեսական նոր պրոցեսների էության խոր ընկալման վրա: Պետք է մշտապես բարձրացնել յուրաքանչյուր բանվորի, մասնագետի աշխատանքային, սոցիալական և քաղաքական ակտիվությունը, կոլեկտիվներում ձևավորել գաղափարաքաղաքական բարձր տրամադըրվածություն, որը կապահովի մեր զարգացման որակապես նոր և խոշորամասշտաբ խնդիրների իրականացումը:

Մեծ ուշադրությամբ են ուսումնասիրվում կուսակցական վերջին փաստաթղթերը «Լույսի» կոլեկտիվում: Կոմունիստներն ու անկուսակցականները տեսնում են դրանց մեջ իրենց հետագա գործողությունների ծրագիրը: Ապագայի պլանները և զարգացման հեռանկարները կազմելիս՝ լամպագործները գիտակցում են, որ հաջողության հիմնաքարը մարդկային գործոնն է: Այստեղից էլ՝ ձգտումը սոցիալիստական մրցության հետագա կատարելագործման, որը դաստիարակում է մարդկանց մեջ ակտիվություն, պետականորեն մտածելու, սեփական շահերը հասարակական շահերի հետ ներդաշնակելու կարողություն:

Այս օրերին սոցիալիստական մրցությունը կոլեկտիվներում նոր թափ է ստացել: Հաջողությունները, անշուշտ, նշանակալից են, բայց «Լույսի» կոլեկտիվի ուժը նրանում է, որ նա սովոր չէ կանգ առնել ձեռքբերածի վրա և վստահորեն նայում է վաղվա օրվան:

Մշակելով առաջիկա անելիքները՝ հաշվի են առնվում, որ նոր խնդիրների իրականացումը կպահանջի ուժերի, հնարավորությունների առավելաչափ լարում, ժամանակի պահանջների համեմատ վերափոխվելու ունակություն: Անցած տարիների փորձը ցույց է տալիս, որ էլեկտրատեխնիկների ստեղծագործ ոգին թույլ է տալիս հաջողությամբ լուծելու ամենաբարդ խնդիրները: Եվ դրանում մեծ դեր ունի Բենիամին Հակոբի Թումասյանը: Այո՛, հենց նա:

Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ

---

Հեղափոխության աննկուն մարտիկները

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԸ

## ՌՍԴԲ(բ)Կ VI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս
Ա. ՍՄՈԼՆԻԿՈՎ
ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր
ՄԼԻ-ի ավագ գիտաշխատող

1917 **ԹՎԱԿԱՆԻ ՕԳՈՍՏՈՍԻ 8—16-Ը** Պետրոգրադում կիսալեգալ պայմաններում կայացավ բոլշևիկյան կուսակցության VI համագումարը, որը նպատակամղեց զինված ապստամբության, սոցիալիստական հեղափոխության: Համագումարի բոլոր որոշումներն ուղղված էին բանվոր դասակարգին ու չքավոր գյուղացիությանը Ռուսաստանի հակահեղափոխական բուրժուազիայի դիկտատուրայի դեմ զինված ապստամբության նախապատրաստելու նպատակին: Գտնվելով ընդհատակում, կուսակցության և հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինը ղեկավարում էր համագումարի աշխատանքը: Լենինի աշխատությունները դրվեցին նրա բանաձևերի հիմքում:

Համագումարին ներկա էր 157 պատգամավոր վճռական ձայնով և 110-ը՝ խորհրդակցական ձայնով, որոնք ներկայացնում էին 162 կուսկազմակերպություններ: Մինսկի կազմակերպությունից համագումարի պատգամավոր էր ընտրվել 1906 թվականից ՌՍԴԲ(բ)Կ անդամ Ա. Ֆ. Մյասնիկյանը (Մյասնիկով): Մինչև բոլշևիկների VI համագումարը նա կուսակցական աշխատանք էր կատարում Դոնում, Մոսկվայում, Բաքվում, Արևմտյան ռազմաճակատում: 1917 թվականի Փետրվարյան հեղափոխությունից հետո նա եղել է Արևմտյան ռազմաճակատի ՌՍԴԲ(բ)Կ կոմիտեի անդամ (տե՛ս Шестой съезд РСДРП (большевиков). Август 1917 года. Протоколы, М., 1958, стр. 458):

Փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխության ժամանակ Ա. Ֆ. Մյասնիկյանը գտնվում էր գործող բանակում: Այստեղ Ի. Ե. Լյուբիմովի, Ի. Կ. Քասնոփոնտովի և այլ լենինյանների հետ միասին նա գլխավորեց բոլշևիկյան աշխատանքը զինվորական զանգվածների շրջանում, կարևոր դեր խաղաց Մինսկի բոլշևիկյան կազմակերպության և բանակային կուսակցական կազմակերպությունների միջև կապեր հաստատելու գործում: Նա մեծ աշխատանք է ծավալում զինվորական զանգվածներին բոլշևիկների կողմը գրավելու ուղղությամբ, ղեկավարում է ռազմաճակատային զինվորական կոմիտեի գործկոմին կից իր իսկ ստեղծած ագիտատորների քաղաքական դասընթացները, պատրաստում է սոցիալիստական հեղափոխության համար պայքարող ակտիվ մարտիկների:

1917 թվականի ապրիլի 7-ին Արևմտյան ռազմաճակատի բանակների ու թիկունքի զինվորական ու բանվորական դեպուտատների I համագումարում, որը կայացավ Մինսկում, գնդի զինվորական կոմիտեի կողմից որպես պատգամավոր համագումար ուղարկված Ա. Ֆ. Մյասնիկյանը հանդես եկավ մի ճառով, որում բացահայտեց ժամանակավոր կառավարության հակաժողովրդական էությունը, մենշևիկների ու էսէռների դավաճանությունը: Նա հետևողականորեն պաշտպանում էր լենինյան լոզունգները պատերազմի ու խաղաղության, հողի, իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու մասին, հանդես էր գալիս մենշևիկների հետ կապերը վերջնականապես խզելու և Բելոռուսիայի բոլշևիկներին որպես ինք-

նորույն կուսակցական կազմակերպություն ձևավորելու օգտին: Հենց համագումարում էլ Ա. Ֆ. Մյասնիկյանն ընտրվեց ռազմաճակատային գործադիր կոմիտեի կազմում, որտեղ գլխավորեց բոլշևիկյան ֆրակցիան: Դրանից հետո շատ շուտով ստեղծվեց ՌՍԴԲ(բ)Կ Մինսկի կոմիտեն՝ Ա. Ֆ. Մյասնիկյանի գլխավորությամբ:

Ընտրված լինելով ՌՍԴԲ(բ)Կ VI համագումարի պատգամավոր, ուղղակի Արևմտյան ռազմաճակատի խրամատներից ժամանելով մայրաքաղաք, Ալեքսանդր Ֆյոդորովիչ Մյասնիկյանը նրբազգացորեն ընկալեց վերջին երեք շաբաթվա ընթացքում քաղաքական իրադրության մեջ տեղի ունեցած բոլոր փոփոխությունները: Աշխատավորների հուլիսյան խաղաղ ցույցի գնդակահարությունից, մասնակիցների ձերբակալությունից և հեղափոխական զինվորների ու նավաստիների զինաթափ անելուց հետո իշխանությունը երկրում փաստորեն ընկավ հակահեղափոխական ժամանակավոր կառավարության ձեռքը: Երկիշխանությունն ավարտվեց, իսկ սովետները իրենց էսէռամենշևիկյան ղեկավարությամբ վերածվեցին բուրժուազիայի գործակիցների:

Ժամանակավոր կառավարությունը հրաման էր արձակել Լենինին և մյուս բոլշևիկներին ձերբակալելու մասին: Կուսակցությունը, անցնելով կիսալեգալ դրության, Լենինին թաքցրեց խոր ընդհատակում: ՌՍԴԲ(բ)Կ-ն բոլոր հիմքերն ուներ անհանգստանալու Վլադիմիր Իլյիչի կյանքի համար:

1917 թվականի հուլիսի 26-ին, ՌՍԴԲ(բ)Կ պատմական VI համագումարի առաջին նիստում Լենինը միաձայն ընտրվեց պատվավոր նախագահ: Չնայած այն բանին, որ Իլյիչը, խուսափելով ժամանակավոր կառավարության հետապնդումներից, համագումարին ներկա չէր, թաքնված էր Ռազլիվ լճի մոտ եղած հյուղակում, սակայն նա իրականացնում էր համագումարի ողջ աշխատանքի գաղափարական ղեկավարությունը, որն զգացվում էր համագումարի աշխատանքի 9 օրերից յուրաքանչյուրում:

Կուսակցության VI համագումարը 1907 թվականի մայիսին Լոնդոնում կայացած նախորդ՝ V համագումարից բաժանում էր մի ամբողջ տասնամյակ: Կուսակցությունն այդ ժամանակամիջոցում կոփվել էր պայքարում, կուտակել անլեգալ ու լեգալ գործունեության մեծ փորձ, ամրապնդվել էր գաղափարապես ու կազմակերպորեն, բազմապատկել էր իր շարքերը, իր կողմը նվաճել Ռուսաստանի առաջավոր բանվորների վիթխարի մեծամասնությանը: Առավել մեծ ուշադրությամբ էին նրա ձայնին ունկնդրում հեղափոխական զինվորները ու գյուղացիները:

Լենինը համագումարում պետք է զեկուցումներով հանդես գար օրակարգի հիմնական հարցերի մասին. Կենտկոմի քաղաքական հաշվետվությամբ, ընթացիկ մոմենտի մասին, կուսակցական ծրագրի վերանայման մասին: Նա խնամքով պատրաստվում էր ելույթների համար, բայց հարկադրված լինելով գտնվել Պետրոգրադից 34 կիլոմետր հեռու, Ռազլիվում, Լենինն այդ նյութերն օգտագործեց համագումարին ուղարկած իր ցուցումներում, աշխատելով պատգամավորներին հաղորդել իր մտքերն ու գաղափարները:

«Рабочий и солдат» թերթում հայտարարվել էր միայն համագումարի հրավիրման մասին, բայց չէր նշվել դրա նիստերի վայրը:

Ժամանակավոր կառավարության կողմից համագումարի փակման սպառնալիքն այնքան մեծ էր, որ հարկ եղավ փոխել ոչ միայն նիստերի վայրը, այլև անցկացնել Կենտկոմի անդամների ընտրությունները մինչև նրա աշխատանքների ավարտը, ինչպես նաև կրճատել բուն աշխատանքի տևողությունը:

Ա. Ֆ. Մյասնիկյանի վրա հսկայական տպավորություն գործեցին համագումարում ընթերցված Վ. Ի. Լենինի դիրեկտիվները: Չէ՞ որ հենց համաշխարհային պրոլետարիատի առաջնորդի երկերի ուսումնասիրությունը, որոնցում տրված էր շահագործումից ազատագրված հասարակության հիրավի հոյակապ պատկերը, վճռորոշ ուղենիշ դարձավ նրա կյանքում:

Նա ակտիվորեն հանդես էր գալիս ամեն տեսակի ազգային ու գաղութային ճնշում վերացնելու օգտին, որպեսզի ազգությունները ձեռք բերեն կատարյալ իրավահավասարություն, պայքարում էր մեծ ու փոքր ժողովուրդների ազատ ինքնորոշման ու զարգացման համար, բանվոր դասակարգի, բոլոր ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ միասնության համար: Ազգային հարցը դիտելով որպես հասարակության արմատական հեղափոխական վերափոխման հարցի մի մասը, Ա. Ֆ. Մյասնիկյանը ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը կապում էր բուրժուադեմոկրատական հեղափոխության փուլում ինքնակալու-



թյան տապալման համար մղվող ընդհանուր դեմոկրատական պայքարի հետ: Իսկ ապա, երբ պայմաններ ստեղծվեն սոցիալիստական վերափոխումների համար՝ երկրում սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի իրականացման հետ:

Իր աշխատություններում նա քննադատության է ենթարկում «կուլտուր-ազգային ավտոնոմիայի» հակամարքսիստական բնույթը, որն ազգերի ինքնորոշման փոխարեն առաջարկում էր նրանց արհեստական միավորում երկրի տարբեր շրջաններում ապրող մեկ ազգության ներկայացուցիչների «կուլտուրական ընդհանրության» հիման վրա: Նման ծրագիրը, որը ազգային կուլտուրայի միասնության դրոշով արհեստականորեն մեկ միջդասակարգային միության մեջ էր միաձուլում շահագործողներին և շահագործվողներին, աշխատավորներին մասնատում էր առանձին ազգային ջոկատների, բորբոքելով ազգային թշնամություն, Վ. Ի. Լենինը բնութագրել էր որպես «բուրժուական նացիոնալիզմ, որի դեմ պարտադիր է անողոք պայքար»:

Հուլիսյան օրերին Վ. Ի. Լենինի գրած «Երեք ճգնաժամ», «Քաղաքական դրություն», «Լոզունգների առթիվ» և այլ հոդվածներում նշված էր կուսակցության քաղաքականությունը. զինված ապստամբության կուրսը, վճռական պայքարը բուրժուազիայի և հակահեղափոխության դեմ՝ իշխանությունը պրոլետարիատի և չքավոր գյուղացիների ձեռքը անցնելու համար: Լենինյան կուսակցությունը պետք է իր վրա վերցներ առաջավոր մարտիկի դերը: Նախազգուշացնելով վաղաժամ ելույթներից, կուսակցությունը դրա հետ մեկտեղ ժողովրդական զանգվածների շրջանում իր տարած գաղափարական ու կազմակերպական աշխատանքով արագացնում էր համազգային հեղափոխական ճգնաժամի հասունացումը՝ մասսաներին նախապատրաստելով բուրժուազիայի իշխանության տապալմանը: Վ. Ի. Լենինի ցուցումներին խիստ համապատասխան համագումարը ժամանակավորապես օրակարգից հանում է «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը՝ որպես հեղափոխության խաղաղ զարգացման լոզունգ, օրակարգից չհանելով, սակայն, սովետների, ինչպես և մյուս մասսայական կազմակերպությունների բոլշևիկացման համար հետագա պայքարի խնդիրը:

Համագումարի ամբիոնից ծանրակշիռ կերպով հնչեցին նրա ողջ աշխատանքի ուղղությունը որոշող հիմնական զեկուցումները՝ Կենտրոնական կոմիտեի քաղաքական, կազմակերպական, ֆինանսական հաշվետվությունները: Դրանցում շարադրված էին Լենինի ղեկավար ցուցումները, ամփոփված էին բոլշևիկյան կուսակցության գործունեության արդյունքները կուսակցության VII (ապրիլյան) կոնֆերանսից հետո անցած ժամանակաշրջանում, ընդհանրացված էր մասսաների համար մղված պայքարում կուսակցության կատարած աշխատանքի փորձը: Հուլիսյան դեպքերից հետո երկրում ստեղծված քաղաքական իրադրության լենինյան գնահատականը պարունակում էր երկրի ներսում և համաշխարհային ասպարեզում դասակարգային ուժերի տեղաբաշխման խոր վերլուծությունը, նշում հեղափոխության հետագա զարգացման հեռանկարները: Կենտկոմը հատուկ ուշադրություն էր դարձնում պատերազմի դեմ մղվող ագիտացիային, պատերազմի իմպերիալիստական բնույթի և դեմոկրատական հաշտություն նվաճելու ուղիների պարզաբանմանը լայն զանգվածների շրջանում:

Առաջին անգամ չէր, որ Ալեքսանդր Մյասնիկյանը ստիպված էր լինում կուսակցության շարքերում պայքարել օպորտունիզմի ներկայացուցիչների դեմ: Նրանք ուժեղ հակահարված ստացան նաև համագումարում, երբ փորձեցին հանդես գալ սոցիալիստական հեղափոխության կուսակցության կուրսի դեմ՝ անհնարին հայտարելով սոցիալիզմի հաղթանակը Ռուսաստանում: Մյասնիկյանը Պրեոբրաժենսկու հակալենինյան, ըստ էության տրոցկիստական գիծը մերժող համագումարի այն համերաշխ մեծամասնության թվում էր, որն առաջարկել էր քաղաքական դրության մասին բանաձևում նշել, թե մեր երկիրը կարելի կլինի սոցիալիստական ուղիով զարգացնել Արևմուտքում պրոլետարական հեղափոխության առկայության դեպքում միայն:

Իր որոշումներում համագումարն առանձնահատուկ ուժով շեշտեց բանվոր դասակարգի և չքավոր գյուղացիության դաշինքի՝ որպես սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հիմնական պայմանի մասին լենինյան դրույթը: Համագումարը վստահություն հայտնեց, որ ռուսաստանյան հեղափոխության նոր անխուսափելի վերելքը Արևմուտքի կապիտալիստական երկրներում սոցիալիստական հե-

ղաշրջումից առաջ էլ իշխանության գլուխ կկանգնեցնի բանվորներին և չքավոր
գյուղացիներին:
Համագումարի առաջին իսկ նիստում օրակարգի քննարկմանն անցնելու վե-
րաբերյալ առաջարկության առթիվ հանդես գալով, Մյասնիկյանը առաջ քաշեց
բանակում տարվող աշխատանքի հարցը որպես առանձին կետ օրակարգի մեջ
մտցնելու գաղափարը: Չնայած այն բանին, որ ձայների մեծամասնությամբ առա-
ջարկությունը չընդունվեց, սակայն Սվերդլովը կազմակերպական բյուրոյի անունից
հայտարարեց, որ անհրաժեշտ է օրակարգի մեջ մտցնել կազմակերպական հարցեր,
դրանց թվում և բանակում ու գյուղացիության շրջանում տարվող աշխատանքի
հարցը: Այդ առաջարկությունն ընդունվեց (տե՛ս Шестой съезд РСДРП
(большевиков)..., стр. 9—10):
Համագումարին ներկայացված այն 19 զեկուցումների կազմում, որոնք ուղարկ-
վել էին տեղերից, հինգը զինվորական կազմակերպություններից էին: Զեկուցողները
նշում էին բոլշևիկների ազդեցության անշեղ աճը բանվորների և գյուղացիների
շրջանում: Մոսկվայի, Կրոնշտադտի, Հելսինգֆորսի, XII բանակի և Ռումինական
ռազմաճակատի զինվորական կազմակերպությունների կողմից կարդացված զեկու-
ցումներում նշվում էր բոլշևիկյան կազմակերպությունների ազդեցության ուժեղա-
ցումը զինվորների ու նավաստիների շրջանում: Կուսակցության զինվորական կազ-
մակերպությունը ապրիլից մինչև հուլիս 6 հազարից աճել ու հասել էր 26 հազարի:
Տեղերից ստացված զեկուցումները վկայում էին սոցիալիստական հեղափոխության
քաղաքական բանակի ստեղծման ուղղությամբ մասսաների շրջանում բոլշևիկների
կատարած հսկայական աշխատանքի մասին:
Բայց վերադառնանք համագումարի առաջին նիստին: Արձանագրության մեջ
ընդամենը ութ կարճ տող է գրավում Մյասնիկյանի ելույթը, բայց որքա՜ն տարո-
նակ էր այն իր իմաստով (նույն տեղը, էջ 9): Դեռ նախօրյակին, արդեն քանի-
երրորդ անգամ խորհելով իր առաջիկա ելույթի պլանի մասին, Մյասնիկյանը հրա-
տակ պատկերացնում էր. քանի որ բուրժուազիայի իշխանության հիմնական գոր-
ծիքը բանակն է, հավանաբար, մեծ է նաև բանակի դերը հեղափոխության մեջ, երբ
լուծվում է հեղափոխության հիմնական հարցը՝ իշխանության հարցը: Վ. Ի. Լենինը
գիտականորեն ապացուցեց, որ հեղափոխական բանակի ստեղծումը հավասարա-
պես անհրաժեշտ է ինչպես հաղթական ապստամբությունն իրականացնելու, այն-
պես էլ հեղափոխության խաղաղ զարգացումը ապահովելու համար: Բոլշևիկների
կուսակցությունը պետք է ունենար ավելի մեծ ուժ, քան կար բուրժուազիայի տրա-
մադրության տակ:
Շահագործող դասակարգերի կազմակերպված ռազմական ուժին բանվոր դա-
սակարգը պետք է հակադրի իր ռազմական ուժը՝ հեղափոխական բանակը, որը
չի կարող ստեղծվել առանց հին բանակը պրոլետարիատի կողմը գրավելու: Բա-
նակի մեծագույն մասում տիրող հեղափոխական տրամադրությունները և նրա
առավել գիտակից խավերի բոլշևիկացումը պրոլետարիատի համար ապահովում
էին ոչ միայն մասսայական, զինված դաշնակից, այլև տիրապետող դասակարգերի
մասնակի զինաթափում, դրանով իսկ բարենպաստ պայմաններ ստեղծելով հեղա-
փոխության հաղթանակի համար: Զինված ապստամբության լենինյան պլանը են-
թադրում էր հեղափոխական զինված ուժերի նախապատրաստում ոչ միայն պրո-
լետարիատի կողմից իշխանությունը գրավելու, այլև նրա նվաճումների հետագա
պաշտպանության համար: Այդ նպատակով զինվորական զանգվածները պետք է
անցնեն քաղաքական դաստիարակության բովով, բոլշևիկանան: Այս խոհերով էլ
տոգորված էր նրա ելույթը. «Մենք չափից ավելի լավատեսական հայացք ունենք
բանակի մասին: Մեր բանակը անկայուն է կուսակցականության իմաստով»,— ա-
սում էր Մյասնիկյանը համագումարում:
Հուլիսի 28-ին, համագումարի հինգերորդ (առավոտյան) նիստում նախագա-
հող Յա. Մ. Սվերդլովը հանգամանալից զեկուցման համար խոսքը տալիս է Մյաս-
նիկյանին, և վերջինս զարգացնում է իր այդ միտքը ու հստակորեն ձևակերպում
բանակը սոցիալիստական հեղափոխության մեջ ներգրավելու գործում բոլշևիկների
առջև ծառացած առաջնահերթ խնդիրները: Բայց այժմ, ելույթից հետո, կարևոր էր
իմաստավորել համագումարի պատգամավորների արձագանքը ասվածի նկատմամբ:
Փորձել ձևակերպել գլխավորը առաջիկա զեկուցման համար:
ՌՍԴԲ(բ)Կ VI համագումարում Մյասնիկյանը ելույթ ունեցավ Արևմտյան ռազ-
մաճակատի և Բելոռուսիայի անունից: Զեկուցումով հանդես եկավ ռազմաճակա-



տում, Մինսկի սովետում տիրող իրադրության, կուսակցության խնդիրների մասին
(նույն տեղը, էջ 68—69): Նա նշեց, որ ռազմաճակատային ժողովում հաջողվել է
ընդունել տալ բանաձև հարձակման դեմ, ճիշտ է, էսէռների ձեռնպահությամբ: Նա
հայտարարեց, որ «ռազմաճակատային կոմիտեի անդամները մտնում են մեր կազ-
մակերպության մեջ, և դրա միջոցով մենք հույս ունենք ապագայում ազդեցություն
ունենալ ողջ ռազմաճակատի վրա... Ագիտատորների համար դասընթացներ են
ստեղծվել Արևմտյան ռազմաճակատի զինվորների շրջանում: Դասընթացներն ա-
վարտած և ռազմաճակատ մեկնած ագիտատորներից ստացվող նամակներից ե-
րևում է, որ նրանք շարունակում են վարել բոլշևիկյան գիծ»: Բոլշևիկների գերա-
կշիռ ազդեցությամբ անցկացվող պարապմունքներում միաժամանակ սովորող 700—
800 մարդը կազմում էին ոչ պակաս քաղաքական ուժ: «... Անհրաժեշտ է ամուր
կապ ստեղծել Կենտրոնական կոմիտեի հետ... Մենք ինքներս կապեր ստեղծեցինք
ռազմաճակատային կոմիտեի միջոցով, Մինսկի սովետի և Մինսկի կազմակերպու-
թյան միջոցով: Անհրաժեշտ է թափանցել բանակ և այնտեղ ստեղծել մեր ամուր
կազմակերպությունները»:
Խոսելով բանակում սիստեմատիկ լարված աշխատանք տանելու անհրաժեշ-
տության մասին, վճռականորեն պաշտպանելով կուսակցության՝ զինված ապստամ-
բության լենինյան կուրսը, նա պատգամավորներին հավաստիացրեց, որ Բելոռու-
սիայի բոլշևիկները պատվով կկատարեն իրենց առջև դրված խնդիրները պրոլե-
տարական հեղափոխության հաղթանակի համար մղվող պայքարում:
Մյասնիկյանի վրա առանձնապես մեծ տպավորություն էր գործել կուսակցու-
թյան Կենտկոմին կից զինվորական կազմակերպության ղեկավար Ն. Ի. Պոդվոյսկու
զեկուցումը, որը պատգամավորներին ծանոթացրեց այդ կազմակերպության գործու-
նեությանը, բերեց, օրինակ, այսպիսի մի մանրամասնություն. «Մեր աշխատանքը
Պետերբուրգի զորքերում սկսվեց ինքնակալության տապալման հաջորդ իսկ օրը»
և, չնայած կատաղի հալածանքներին, բոլշևիկյան կազմակերպությունները Պետ-
րոգրադի կայազորի զորամասերում հուլիսյան դեպքերից հետո ոչ թե թուլացան,
այլ ուժեղացան (տե՛ս նույն տեղը, էջ 59—66):
Առանձնապես ուժեղ հնչեց այն կոչը, որ անհրաժեշտ է սոցիալ-դեմոկրատիա-
յին հարող և նրա հետևից ընթացող բանակի հեղափոխական-դեմոկրատական
տարրերից ստեղծել նյութական զինված պատվար հեղափոխության համար:
Ա. Ֆ. Մյասնիկյանի վրա մեծ տպավորություն գործեցին նաև Պ. Ա. Ջափա-
րիձեի ելույթը, որը կոչ էր անում զինվել սովետների բոլշևիկացման միջոցով պրո-
լետարիատի և չքավոր գյուղացիության կողմից իշխանությունը նվաճելու ավելի
ակտիվ ու կենսունակ, մասսաներին մոբիլիզացնող լոզունգով, և Ռ. Ս. Սամոյլովա-
յի (Զեմլյաչկայի) ելույթը, որը խոսեց պատանեկան կազմակերպություններ և երի-
տասարդական միություններ ստեղծելու անհրաժեշտության մասին:
Մյասնիկյանի ոգուն հարազատ էր Մ. Ա. Սավելևի ճառը կուսակցության տըն-
տեսական պլատֆորմի մասին: Նա քննադատում էր Օսինսկու (Վ. Վ. Օբոլենսկու)
տեսակետը՝ որպես հնացած, որը հաշվի չէր առնում հակահեղափոխության այն
իրադրությունը, որում ընթանում էր համագումարի աշխատանքը: Հռետորը անթույ-
լատրելի էր համարում արտադրության և բաշխման նկատմամբ բանվորական վե-
րահսկողության լոզունգը տնտեսական բնագավառում մանր բուրժուազիայի և խո-
շոր բուրժուազիայի ներկայացուցիչների դաշինքի քաղաքականության պայմաննե-
րում: Այդ փաստը անվանելով հեղափոխության դավաճանություն, ելույթ ունեցողը
շեշտեց, որ արտադրության ու բաշխման կազմակերպումը միակ ուղին է, որը կա-
րող է երկիրը դուրս բերել քայքայման վիճակից և հնարավոր է միայն այն դեպ-
քում, եթե իշխանությունն անցնի պրոլետարիատի և գյուղացիության չքավոր խա-
վերի ձեռքը: Նա Օսինսկու հետ համաձայն չէր նաև այն բանում, որ բուրժուազիան
կարող է բարելավել երկրի տնտեսական դրությունը:
Եվ ահա եկավ համագումարի փակման օրը: Ա. Ֆ. Մյասնիկյանը լսում է 1898
թվականից կուսակցության անդամ Վ. Պ. Նոգինին «... Մեր կուսակցությանը, և մի-
այն նրան է բաժին ընկել մի երջանիկ խնդիր՝ լինել ոչ միայն սոցիալիզմի գաղա-
փարների պրոպագանդիստ, այլև ընդհուպ մոտենալ հասարակության նոր կառուց-
վածքի հիմունքների պրակտիկ կենսագործմանը:
Որքան էլ մռայլ լինի ներկա ժամանակի իրադրությունը, այն կփոխհատուցվի
այն խնդիրների վեհությամբ, որոնք կանգնած են մեր առջև՝ որպես պրոլետարիա-
տի կուսակցության, որը պետք է հաղթանակի և կհաղթանակի:

գեղարվեստական ժամանակագրություն է, դրանում մեծ է նաև զինվորական կենցաղի թեմայի բաժինը», բելոռուսական գրականության մեջ՝ պատմություն պարտիզանական դիմադրության մասին և այլն: Համաձայնելով այս պնդմանը, եզրակացնում ենք, որ այն հարըստացնում է քննադատության հնարավորությունները պատերազմական արձակի հոգեոր-բարոյական պրոբլեմատիկայի քննարկման գործում, ընդլայնում է գեղարվեստական ստեղծագործության վերլուծության շրջանակները, քանի որ լայնորեն ընդգրկում է դրանց կոնկրետ սյուժետային-բովանդակային կողմը:

Հետաքրքրական է «Աշխարհի կենտրոնում» բաժինը, ուր խոսվում է Ավ. Իսահակյանի ստեղծագործության մասին, ցույց է տրվում բանաստեղծի գեղագիտական ու փիլիսոփայական-աշխարհայացքային մտածողության, հայացքների, նրա մշակութային հետաքրքրությունների լայնությունը: Այստեղ հետազոտվում են նաև Իսահակյան-հրապարակախոսի գործունեության որոշ քիչ հայտնի կողմերը, արտացոլվում է նրա համագործակցությունը այն տարիների առաջադեմ մամուլի, մասնավորապես, «Մշակի» հետ: Հետաքրքրական է, թե ինչպես է հեղինակը նմանություններ, շփման կետեր գտնում Ավ. Իսահակյանի և Կնուտ Համսունի ստեղծագործության փիլիսոփայական-գեղագիտական կոնցեպցիաներում: Այդ նմանությունը, ինչպես իրավացիորեն նշված է գրքում, ուղղակի հետևանքն է երկու այդքան տարբեր գրողներին հատուկ «բողոքի ընդդեմ բուրժուական քաղաքակրթության, որը այլանդակում և աղավաղում է «բնական մարդուն»»:

Ժողովածուում քիչ չեն նաև այլ ուշագրավ նյութերը, ինչպես օրինակ, գիտության և արվեստի մարդկանց հանդիպումների մասին հուշագրությունները, մարդիկ, որոնց հետ հեղինակը շփվել է լրագրողի աշխատանքի բերումով:

Ընդհանուր առմամբ Լ. Կիրակոսյանի գիրքը, անկասկած, արժեքավոր ուսումնասիրություն է, որոշակի ավանդ հայ գրականագիտության, քննադատության և հրապարակախոսության զարգացման գործում:

**Ա. ԲԱԳՐԱՏՈՒՆԻ**

Հանձնված է շարվածքի՝ 08. 07. 87 թ.: Ստորագրված է տպագրության 13. 08. 87 թ.: ՎՖ 02969:
Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$: Տպագրություն՝ բարձր,, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.:
Տպաքանակը՝ 18032: Պատվեր 1522:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: